# ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆ
# KOHARIK GAZAROSSIAN

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ
## ԴԱՇՆԱԿԻ ՀԱՄԱՐ
## WORKS FOR PIANO

# KOHARIK GAZAROSSIAN

## WORKS FOR PIANO

Edited by
HAIG AVAKIAN

Cairo 2005

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կու գամ խորին շնորհակալութիւններս յայտնելու Գահիրէի ՀԲԸՄ-ի վարչութեան՝ որ ընդունեց հոգալ այս հատորի տպագրութեան ծախսերը:

Շնորհակալութիւն տիկ. Սօնա Պետրոսեանին (Փարիզ)՝ որ տրամադրեց Գ. Ղազարոսեանի ձեռագիրները եւ թոյլատրեց անոնց տպագրութիւնը:

Շնորհակալութիւն Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի տնօրէն՝ տոքթ. Հենրիկ Բախչինեանին, երաժշտական բաժինի աւագ փոնտապահ՝ Մարինէ Մուշեղեանին, երաժշտական բաժինի վարիչ՝ Ցօղիկ Բեքարեանին եւ միւս աշխատակիցներուն՝ որոնք բոլոր դիւրութիւնները ընծայեցին ինծի ուսումնասիրելու Թանգարանի Ղազարոսեանի դիւանին նիւթերը:

Հ. Ա.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Ըլլալով բարձրահմուտ դաշնակահարուհի՝ Գոհարիկ Ղազարոսեանի (Կ. Պոլիս, 21 Դեկտեմբեր 1907 – Փարիզ, 29 Հոկտեմբեր 1967) ստեղծագործական ժառանգութեան գլխաւոր մասը, բնականաբար, պիտի կազմէին դաշնակի գործերը, որոնք կը բովանդակեն բազմաթիւ նուագաշարեր, մանրանուագներ, սոնաթ մը եւ երկու քոնչերթօ: Սակայն ոչ նուազ հետաքրքրութիւն կը ներկայացնեն նաեւ իր միւս գործերը՝ ջութակի եւ դաշնակի, թաւջութակի եւ դաշնակի, սրինգի եւ դաշնակի, եռանուագի (դաշնակ, ջութակ եւ թաւջութակ, եւ դաշնակ, սրինգ եւ ջութ), լարային քառանուագի, հնգանուագի (օպոա եւ լարային քառանուագ, եւ սրինգ եւ լարային քառանուագ) եւ  երգեհոնի համար, ինչպէս նաեւ բազմաթիւ մեներգներ եւ խմբերգներ՝ տարբեր նուագարաններու նուագակցութեամբ, եւ միակ թատերապարը (ballet)՝ *Մօր մը պատմութիւնը*:

Իբրեւ Ղազարոսեանի ստեղծագործութիւններու հրատարակութեան առաջին փուլ՝ կը ձեռնարկեմ գործիքային երաժշտութեան փոքր կտաւի լիակատար գործերուն քննական խմբագրութեան (critical edition), յոյս ունենալով այնտեղ բացայայտել խորիմաց, նրբազգաց, վսեմ իմացականութեամբ օժտուած երաժշտահանի մը ցարդ անյայտ մնացած յատկանիշները:

Ղազարոսեանի գործերը կարելի է բաժնել երկու մասի՝ հայկական աւանդական մեղեդիներու հենքով գործեր եւ ինքնուրոյն հենքով գործեր: Առաջինները եւս կը բաժնուին երկու ենթամասի՝ հոգեւոր երաժշտութեան հենքով եւ գեղջկական: Բայց երկու գլխաւոր բաժանումներն ալ յստակ գիծով մը չեն սահմանազատուած իրարմէ: Միեւնոյն նուագաշարի տարբեր չարժումներուն մէջ, այլեւ միեւնոյն ստեղծագործութեան զանազան մասերուն մէջ կարելի է համատեղուած գտնել թէ՛ աւանդական եղանակներու վերծանումներ եւ թէ՛ ինքնուրոյն հիմնանիւթեր, այլեւ աւանդականներու նմանողութեամբ յօրինուածներ:

Աւանդական մեղեդիներու գործիքային վերծանութեան պարագային՝ Ղազարոսեան հանդէս կը բերէ անկաշկանդ մօտեցում: Ան ամբողջական մեղեդիներ կամ անոնցմէ քաղուածքներ օգտագործելով իբրեւ հիմնանիւթեր (themes)՝ իր ստեղծագործութիւնները դուրս կը հանէ դաշնակումի կամ դաշնաւորումի (harmonization) շրջածիրէն, զանոնք դարձընելով ազատ յօրինումներ:

Ուրիշ պատկեր կը ներկայացնեն աւանդական մեղեդիներու երգչային (ոչ-գործիքային) վերծանումները: Այստեղ արդէն Ղազարոսեան կը հետեւի «դաշնակում-դաշնաւորում» մտատիպարին՝ գրեթէ անխաթար պահելով բուն մեղեդին: Օրինակ՝ 1948-ին, *Հասկ* տարեգիրքին մէջ կը հրատարակէ ութ շարական՝ դաշնակի նուագակցութեամբ հանդերձ, ուր իր աշխատանքը իրաւամբ կը բնութագրէ իբրեւ դաշնաւորում[1], քանի որ երգամասերը թողած է անփոփոխ: Նոյնպէս, դաշնաւորում բնութագրութիւնը կու տայ 1950-ին հրատարակած Կոմիտաս Վարդապետի քսան գեղջկական երգերուն[2]:

Ընդհանրապէս, Ղազարոսեանի համար՝ իր ստեղծագործութիւններուն գործիքային կազմն ունի վերացական նշանակութիւն: Միեւնոյն ստեղծագործութիւնը դիւրութեամբ կը փոխադրէ այլ նուագարաններու, յաճախ անփոփոխ պահելով երաժշտութիւնը կամ կատարելով ընդամէնը նուագարանի նուագելիութիւնը ապահովող ութեակային փոխադրութիւններ: Ղազարոսեանի համար կարեւոր է հնչիւնային անկախութիւնը՝ առանց անպայմանօրէն զայն կապելու ճշգրիտ հնչականութեան (timbre) հետ, որով ան կը ձգտի հնչիւնը դիտել ու ըմբռշխնել իր տիեզերական եւ համա-գործիքային ընդհանրականութեան մէջ:

Այս առումով, ան կը հետեւի գաղափարապաշտներու (idealist) դրութեան, որոնք երաժշտութիւնն ու նուագարանները կը դիտեն նիւթականէն դուրս՝ անկախ ժամանակատարածային նիւթապաշտական (materialistic) յատկանիշներէն, իբրեւ համա-ժամանակային եւ համա-տարածական արտադրութիւններ[3]:

Թէ՛ երգերու դաշնակում-դաշնաւորումներուն եւ թէ՛ անոնց գործիքային ազատ կիրառումներուն մէջ Ղազարոսեան դիմած է բաւական անկախ, տարածուն ու բազմաբնոյթ դաշնակի նուագակցութեան, օգտագործելով բազմաձայնական (polyphonic) հնարքներ եւ դիմելով ոչ-դասական (non functional) դաշնակումներու (harmonies), որոնց ընդմէջէն յաջողած է առաջ բերել ինքնուրոյն երանգներ ու այլազան չերտաւորումներ: Ղազարոսեան

նպատակ չէ դրած արտացոլել խօսքերուն իմաստային բովանդակութիւնը, այլ ցանկացած է միաձայն երգն ամբողջութեամբ ընդունիլ իբրեւ ներշնչանքի աղբիւր՝ իրականացնելու իր գեղարուեստական մտոլորումները, երեւան հանելու անկաշկանդ ստեղծագործականութիւն եւ ներուժականութիւն:

Այս առումով, հեղինակին համար կարեւոր չէ դաշնակումներու կամ մշակումներու միջոցով վեր հանել մեղեդիին առանձնայատկութիւնները, այլ մեղեդի-նուագակցութիւն ընդունիլ իբրեւ անքակտելի, փոխազդեցիկ ամբողջականութիւն մը, առանց երբեք ստեղծագործական առումով նուագակցութիւնը երկրորդելով մեղեդիին: Կարեւոր չէ՝ թէ բուն մեղեդին ինչ «անցեալ» ունեցած է, այլ կարեւոր է՝ որ տուեալ երաժշտութիւնն ունենայ ինքնուրոյն գեղարուեստականութիւն: Միեւնոյնն է, աւանդական մեղեդին արդէն անջատուած է իր բնաբանէն (context), այսինքն՝ ան չի կատարուիր եկեղեցիին մէջ կամ գեղջկական գործողութեան մը ընթացքին, այլ կը հնչէ համերգասրահին մէջ: Հետեւաբար, վերացած են մեղեդիին նախնածին դրդապատճառները, փոխուած է կատարողը եւ ընկալողը: Եւ այս նախնածին տարրերուն բացակայութեան պատճառով՝ աւանդական մեղեդին մտած է ուրիշ բնաբանի մէջ: Բնական է՝ «ուրիշ բնաբան» ըսելով չի նշանակեր աւանդական մեղեդիին վերացում կամ հերքում, այլ պարզապէս անոր վերաիմաստաւորում ու վերաշերտաւորում: Եւ քանի որ այդ մեղեդին արդէն չունի իր նախնական կիրառական նշանակութիւնը, զայն կարելի է նաեւ վերծանել՝ նախնածինին համեմատութեամբ ցոյց տալով բնագրային եւ բովանդակային ազատութիւններ: Արդ, այս մօտեցումը եւս որոշ կողմերով Ղազարոսեանին կը տանի դէպի գաղափարապաշտութիւնը, քանի որ վերջինս չի հետեւիր մեղեդիին անցեալի կիրառականութեան, ուրեմն՝ չէ կապուած մեղեդիի ժամանակա-տարածային յատկանիշներուն հետ:

Ղազարոսեանի ստեղծագործական ուրիշ յատկանիշ մըն ալ նուագաշարի, սոնաթի կամ բազմաշարժում (multi-movement) գործերու առանձին շարժումներուն ազատ համադրումն է՝ առանց ձգտելու տարբեր շարժումներուն միջեւ գոյացնելու կանխամտածուած, խստապահանջ արհեստավարժական (technical) կապ-կամրջակներ, գիտականօրէն նպատակադրուած բախում-համադրումներ, զորս տեսաբանները հաճոյքով պիտի փութային վերլուծել: Օրինակ, դաշնակի միակ Սոնաթին չորս շարժումները նախապէս գոյութիւն ունեցած են (եւ յետագային ալ շարունակած են գոյութիւն ունենալ) իբրեւ բոլորովին այլ յղացումով նուագաշարերու բաղկացուցիչ շարժումներ կամ առանձին յօրինումներ (*տե՛ս* ստորեւ՝ Սոնաթին բացատրութիւնները), կամ Լարային Քառանուագին չորս շարժումները՝ որոնք կը միաւորեն դաշնակի տարբեր ժողովածուներու մէջ տեղ գտած գործեր[4]: Բայց ասիկա չի նշանակեր ներդաշնակութեան ու ընդհանրական զգացողութեան բացակայութիւն: Ղազարոսեան համադրութիւնները կատարած է նկատի առնելով շարժումներուն ներքին յուզական կապը, ամբողջականութիւնն ընդունելով իբրեւ անընդհատ թաւալուող, իրարայաջորդ դէպքերու հերթափոխութիւն՝ միշտ առաջատար ու սլացիկ: Վերջապէս, երբեմն ստեղծագործութեան կենդանի հնչողութիւնը աւելի ուժեղ ու համոզիչ կը հնչէ քան գիտական պատճառաբանութիւնները:

Ի վերջոյ, անհրաժեշտ է նշել Ղազարոսեանին ներքին կապը բանաստեղծական աշխարհին հետ: Դաշնակի գործերէն ոմանք՝ երաժշտահանին իսկ նշումներով, ներշնչուած են զանազան բանաստեղծութիւններէ: Բայց բանաստեղծութիւնը եղած է լոկ ներշնչումի ընդհանուր աղբիւր եւ երբեք հիմք չէ ծառայած ծրագրային վերարտադրութեան: Բանաստեղծութիւնը մէկ կողմէն խթան հանդիսացած է երաժշտահանի երեւակայութեան թաւալքին, միւս կողմէն՝ արտացոլած անոր մտաւոր խոհականութիւնը:

Ղազարոսեանի մենանուագ դաշնակի գործերը գլխաւոր բանալին են զգալու եւ ըմբռնելու միւս գործերուն յատկանիշները, քանի որ անոնք արգասիքն են դաշնակահար-երաժըշտահանի կատարողական-յօրինողական համատեղ, միաձոյլ ու անքակտելի մտածողութեան, կը կազմեն իր յօրինողական արտադրութեան կեդրոնական մասը եւ հիմք հանդիսացած են այլ նուագարաններու ոչ ստուար ժառանգութեան: Նոյնիսկ դաշնակի երկու Քոնչերթոներուն մէջ դժուար չէ նկատել մանրանուագային հակումները՝ հիմնանիւթերու (themes) արծարծումի եւ զարգացումի առումներով:

Հատորիս մէջ լոյս տեսած գործերուն ձեռա-

գիրները կը գտնուին երկու տեղ.

1.-Տիկ. Սօնա Պետրոսեանի մօտ, Փարիզ, որ զանոնք ժառանգած է իր հօրաքոյրէն՝ Գոհարիկ Ղազարոսեանէն:

2.-Երեւանի Չարենց Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Գ. Ղազարոսեանի դիւանին մէջ:

## ՆՈՒԱԳԱՇԱՐԵՐ Թիւ 1, 2
## SUITES Nos. 1, 2

1930-ականներէն սկսեալ, Ղազարոսեան իր մենանուագներու յայտագիրներուն մէջ կ'ընդգրկէ հայկական գործեր՝ ներառեալ իր յօրինումները: 1934 Դեկտեմբեր 1-ին, Փարիզի Maison Pleyel-ի մէջ տուած անդրանիկ նուագահանդէսին կը նուագէ դաշնակի իր առաջին կարեւոր գործը՝ տակաւին նոր յօրինած Suite-ը (Նուագաշար), կազմուած չորս շարժումէ. “Prélude”, “L’Oiseau à ma fenêtre”, “Paresse” (sur un poëme de Mme. H. Mark), “Dansons!” (Նախաբան. Թռչունը պատուհանիս առջեւ. Ծուլութիւն (տիկ. Հ. Մառքի բանաստեղծութեան վրայ). Պարե՛նք)[5]: Ժօրժ Սինանեան կը գրէ՝ թէ այս գործերը «դաշնակի համար չատ լաւ նօթագրուած են: Օր. Ղազարոսեանի ոճը աւելի orientalisme եւ dynamisme կը պարունակէ. երրորդ կտորը “L’Oiseau à ma fenêtre” կրկնուեցաւ»[6]:

Այս նուագահանդէսին չնորհիւ, Ղազարոսեան կ'արժանանայ նաեւ Արչակ Չօպանեանի հիացմունքին. «ունեցանք, նոյնպէս Փարիզի մէջ, դաշնակի գեղեցիկ նուագահանդէսը Օր. Գոհարիկ Ղազարոսեանի, որ ի յայտ բերաւ՝ թէ՛ իբր հզօր ու զգայուն նուագածու եւ *թէ՛ իբր նուրբ ու ինքնատիպ երգահան*՝ չքեղ ապագայի մը սահմանուած արուեստագիտուհիի մը ճոխ խառնուածքն ու ամուր հմտութիւնը» (ընդգծումը իմս է, Հ. Ա.)[7]:

1936 Նոյեմբեր 26-ին, Իսթանպուլի Սինէ Սարային մէջ կու տայ մենանուագ: Կը նուագէ Փարիզի մենանուագին մէջ կատարած Suite-ը՝ զոր վերախորագրած է *Six pièces* (Վեց ստեղծագործութիւն) եւ որուն չորս շարժումներուն աւելցուցած երկու հատ եւս՝ դարձնելով վեց շարժում: Յայտագիրին մէջ Ղազարոսեան թուրքերէն եւ ֆրանսերէն լեզուներով գրած է հակիրճ բացատրութիւններ մենանուագի իւրաքանչիւր գործին մասին: Հետաքրքրական են իր ստեղծագործութեան մասին արտայայտած գաղափարները՝ զորս կը թարգմանեմ ըստ ֆրանսերէն բնագիրին.

«*Վեց ստեղծագործութիւն*, յօրինուած 1934-ին:

«ա.-«Նախաբան». երկու տարր՝ մէկը փափուկ, միւսը բուռն, կը միախառնուին՝ առաջ բերելով կենսունակ հատուած մը: Կրկնութեան ժամանակ մինչեւ վերջ կ'իչխէ փափուկ տարրը:

«բ.-«Թռչունը պատուհանիս առջեւ». պատկերն է փախստական թռչունի մը՝ որ իր կտուցը կը զարնէ ապակիին եւ ի վերջոյ ուժասպառ կ'իյնայ:

«գ.-«Ծուլութիւն» (տիկ. Հայկանոյչ Մառքի բանաստեղծութեան վրայ). «Չխլրտի ոչի՛նչ սրահին մէջ: Եւ ծաղկամանները նիրհեն յոգնած վարդերով: Դաշնամուրին լարերը չտան ո՛չ մէկ երազ. ու չօրօրուի՛ ոչ մէկ իր: Հովը կենայ, եւ, հովհեկները իյնան ուղիղ ծալքերով: Ժամացոյցին թիք թաքն ալ սառի՛:

«Չխլրտի ոչի՛նչ սրահին մէջ: Մեղմ բոյրերը մահանան: Ժամանակը չսահի՛, եւ աչքերը չնայի՛ն:...

«Չխլրտի՛ ոչ մէկ իր: Եւ մրափը ծածանի, դանդա՜ղ, սրտի մը վրայ...»

«դ.-«Պարե՛նք». երկու հիմնանիւթ՝ մէկը կենդանի եւ խիստ, միւսը քաղցր եւ նուաղուն, կը յաջորդեն իրարու, որոնցմէ կը յաղթանակէ առաջինը:

«ե.-«Լերան վրայ». ոգեկոչութիւն մը... լերան գագաթը ծառ մը, անդադար բարձրացում անոր հասնելու համար, ակունքի ձայներուն ուժեղացում եւ ի վերջոյ ժամանում:

«զ.-«Դաւուլի հնչիւնին տակ». ոգեկոչութիւն մը եւս... Պարզամիտ դաւուլահարը եւ իր կչռոյթին հետ պարող երեխաները»:

Տեղական *Սօրեան* լրագիրը կը գրէ՝ թէ «Իր յօրինած երաժշտական վեց կտորները, վառվռուն, զուարթ, նուագկոտ ու աչխուժ, վայելուչ արդիականութիւն մը ունին, ինքնուրոյն բանաստեղծութեան մը փափուկ բոյրովը համակուած, նուրբ յուզումի մը բուրումնաւէտութով, որ ի յայտ կը բերէ արեւելքի բովանդակ հմայքը»[8]:

Մ. Հաճեան կը չեշտէ գոյութիւնը «ինքնատիպ ռիթմի ըմբռնումի մը, հարազատ գոյներու նոյնքան ինքնատիպ ոգեկոչումի մը, եւ կազմուած ճաշակի մը, որ տրամաբանական առողջ խորք մը կու տայ գործին», եզրակացնելով՝ որ «Օր. Ղազարոսեան պիտի կարենայ շուտով տեղ մը ունենալ մեր երաժշտական հեղինակներու շարքին մէջ»[9]:

Սակայն այս գործերուն նկատմամբ որոշ վերապահութիւն մը կը ցուցաբերէ Էտկառ Մանաս գրելով. «Գալով Օր. Ղազարոսեանի յօրինած կտորներուն, պիտի բաւականանանք մատնանշելով թէ անոնք յաջողութիւն ձեռք բերած են: Բաւական շահեկան են այդ սիրուն պատառիկները, որոնք արդիական ձգտումներ ունին, առանց ցոյց տալու ընդարձակութիւն մը եւ ձիրքերու զօրութիւն մը, զոր իրաւունք ունինք սպասելու անոնց երաժշտագիտուհիէն: Մասնաւորաբար գնահատեցինք «Նախերգանքը» եւ «Պարենք»ը: Մեծ վարպետներու վերլուծական էթիւտին շնորհիւ մեր երաժշտագիտուհին մօտաւոր ապագայի մը մէջ անտարակոյս պիտի յաջողի ի յայտ բերել լաւ հաւասարակշռուած գործեր, այնպիսի հմայքով մը օժտուած, որ պիտի յանկուցանէ մեր սիրտը ու պիտի թրթռացնէ զայն»[10]:

Միացեալ Նահանգներու երկրորդ մենանուագին՝ Նիւ Եորքի Քարնէկի Հոլին մէջ, 1948 Յունուար 29-ին, կը նուագէ քառաշարժում Suite-ը[11], այսինքն՝ զանց կ'առնէ Իսթանպուլի 1936-ի մենանուագին համար աւելցուցած վերջին երկու մասերը:

1949 Մարտ 13-ին, Ուաշինկթընի Chevy Chase Woman's Club-ին մէջ կը ներկայացնէ մենանուագ՝ "Third "Well Tempered" Program in C sharp major or D flat major" («Բարեփոխեալ» երրորդ յայտագիր տօ կիսվեր մեծալարի կամ ռէ կիսվար մեծալարի մէջ) վերտառութեամբ (այս խորագիրով մենանուագներուն մասին *տե՛ս* ստորեւ՝ *Album bien tempéré*-ի (Բարեփոխեալ ալպոմ) բացատրութիւնները), ուր կը նուագէ քառաշարժում Suite-ը՝ "Prélude", "L'oiseau à ma fenêtre", "Paresse", "Dansons!"[12]: Նուագահանդէսին բոլոր գործերը պէտք է ըլլային *տօ կիսվեր մեծալար* (C sharp major) կամ *ռէ կիսվար մեծալար* (D flat major) ձայնակայքին (tonality) մէջ: Suite-ը ունի քանի մը ձեռագիր, որոնց բովանդակութիւնները երբեմն տարբեր են իրարմէ: Բայց նախատեսուած ձայնակայքին մէջ գրուած բնագիր չկայ: Հաւանաբար, ձեռագիրը կորսուած է:

1951-ին, "Paresse"-ը մաս կը կազմէ *Album bien tempéré*-ի թիւ 2-ին, իսկ 1959-ին "Dansons!"-ը կը դառնայ նոյն ժողովածուին թիւ 6-ը (աւելի մանրամասն *տե՛ս Album bien tempéré*-ի բացատրութիւնները): Ղազարոսեան "L'oiseau à ma fenêtre"-ը իբրեւ անկախ գործ կը կատարէ 1959 Յունիս 18-ին, Փարիզի Institut Hongrois-ի հեղինակային մենանուագին[13] (յայտագիրին մէջ յօրինումին թուականը կը յիշատակուի 1929), ինչպէս նաեւ Յունուար 1960-ին, Իսթանպուլի Ֆիլհարմոնիք Միութեան սրահին մէջ կազմակերպուած հանդիսութեան[14]:

Ձեռագիրները ոչ անպայմանօրէն կ'արտացոլեն վերոյիշեալ պատմական ընթացքը: Կը գտնուի Suite pour piano (Նուագաշար դաշնակի համար) խորագիրով երկու տարբերակ:

Տարբերակներէն մէկը խմորատիպ բաղմացուած է եւ ունի հետեւեալ բովանդակութիւնը. 1.-"Prélude", 2.-"L'oiseau à ma fenêtre", 3.-"Paresse" (sur un poème de Mme H. Mark), 4.-"Dansons":

Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Գ. Ղազարոսեանի դիւանին մէջ կը գտնուի նոյն տարբերակը ներկայացնող հետեւեալ ձեռագիրը.

Խորագիր՝ Suite pour piano [Նուագաշար դաշնակի համար]: Հեղինակ՝ Coharik Gazarossian: Երաժշտական կազմ՝ մենանուագ դաշնակ: Թուական՝ անթուակիր: Թերթ՝ 4: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ տուշագիր, բազմաթիւ սրբագրութիւններ մատիտով, կանաչ մատիտով եւ կապոյտ մելանով: Մեծութիւն՝ 27x34.9 սմ.:

Ձեռագիրի տիտղոսաթերթին վրայ նշուած են չորս շարժումներուն խորագիրները, բայց ձեռագիրին մէջ կը բացակայի թիւ 4-ը՝ "Dansons":

Միւս տարբերակին ձեռագիրը կը պահուի Սօնա Պետրոսեանի մօտ.

Խորագիր՝ Suite pour piano: Հեղինակ՝ Alice-Coharik Gazarossian: Երաժշտական կազմ՝ մենանուագ դաշնակ: Թուական՝ անթուակիր: Թերթ՝ 5: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ տուշագիր եւ մատիտագիր, մատիտագիր սրբագրութիւններով: Մեծութիւն՝ 27x34.8 սմ.:

Տիտղոսաթերթին վրայ նշուած է չորս շարժումի առկայութիւնը՝ 1.-"Prélude", 2.-"Au son du Davoul (tambour d'orient)", 3.-"Noc-

turne", 4.-"Dansons!" [1.-Նախաբան, 2.-Դաւուլի հնչիւնին տակ (արեւելեան Թմբուկ), 3.-Գիշերերգ, 4.-Պարեհնք]: Ինչպէս միւս տարբերակին Երեւանի ձեռագիրը՝ այստեղ եւս կը բացակայի Թիւ 4-ը: Իսկ միւս երեք շարժումները (ներառեալ "Prélude"-ը) բոլորովին տարբեր են նախորդ տարբերակէն:

Ս. Պետրոսեանի մօտ կը գտնուի նաեւ ուրիշ ձեռագիր մը՝ որ կը բովանդակէ երկրորդ տարբերակի յաջորդաբար "Au son du Davoul"-ը եւ "Prélude"-ը իբրեւ անկախ ստեղծագործութիւններ:

Դժուար է սահմանել երկու տարբերակներուն ժամանակագրական յարաբերութիւնը:

Հրատարակութեանս համար առաջինը ներկայացուցի իբրեւ Թիւ 1 եւ երկրորդը՝ Թիւ 2: Թիւ 1-ին համար հիմնուեցայ խմորատիպ օրինակին վրայ: Թիւ 2-ին համար հիմք ընդունեցի Suite խորագիրով ձեռագիրը, վերջին՝ չորրորդ պակսող մասը նոյնութեամբ ընդունելով Թիւ 1 տարբերակէն: Թիւ 2-ի ձեռագիրը ունի բազմաթիւ մատիտագիր սրբագրութիւններ՝ զորս դժուար է ամփոփել ու ամբողջականացնել: Այս պատճառով, հետեւեցայ սկզբնական, յստակ ձեռագիրով շարադրուած նոթագրութեան:

Հայերէն Նուագաշար վերտառութիւնը եւ իւրաքանչիւր մասի հայերէն խորագիրները աւելցուած են իմ կողմէս:

Suite No. 2-ի (Նուագաշար Թիւ 2) առաջին երկու շարժումները՝ "Prélude" եւ "Au son de Davoul" յետագային պիտի կազմէին Լարային Քառանուագի առաջին երկու շարժումները[15]:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՏԱՐԱԳ «Խորհուրդ խորին»
## MESSE ARMÉNIENNE "O mystère profond"

«Խորհուրդ խորին» Prélude et Fugue-ը (Նախաբան եւ Ֆիւկ) Ղազարոսեան նուագած է Միացեալ Նահանգներու Times Hall-ի մենանուագին, 1948 Նոյեմբեր 18-ին[16]: *Հայաստանի կոչնակի* Թղթակից՝ Գ. Խանամիրեան չի կարողանար զգալ գործին ստեղծագործական իմաստը. «Դաշնակահարին յօրինածը, սկիզբները, որքան ատեն որ ուղղակի եկեղեցական եղանակէն կը ներշնչուէր խիստ շահեկան էր ու նուրբ սակայն զարդարանքներու կամ ընդլայնումի անգունութեան մէջ ցնդեցաւ ան ի վերջոյ, ի մեծ ցաւ ունկնդիրներու»[17]: Խանամիրեան այն պահպանողական ունկնդիրներէն է՝ որոնք կաղապարեալ մօտեցում ունին աւանդական եղանակներու վերծանումներուն հանդէպ:

1951-ին, Prélude et Fugue-ը մաս կը կազմէ Ղազարոսեանի *Album bien tempéré* (Բարեփոխեալ ալպոմ) նուագաշարին, իբրեւ Թիւ 6 (*տե՛ս* ստորեւ՝ *Album bien tempéré*-ի բացատրութիւնները), եւ այս հանգամանքով հեղինակը զայն կը կատարէ 1951 Մարտ 20-ին՝ Փարիզի École Normale de Musique-ին մէջ[18], 1953 Մարտ 13-ին՝ Նիսի Artistique սրահին մէջ[19] եւ Մարտ 19-ին՝ Փարիզի Salle Chopin-Pleyel-ին մէջ[20]:

1954-ին երաժշտահանը զայն արդէն անջատած է *Album bien tempéré*-էն եւ փոխարինած ուրիշ գործով մը: «Խորհուրդ խորին»-ը իր ուղին կը շարունակէ իբրեւ ինքնուրոյն գործ: Հեղինակը զայն կը կատարէ 1954 Նոյեմբեր 30-ին, Տիւսելտորֆի Die Brücke կեդրոնին մէջ տրուած արեւելեան երաժշտութեան նուիրուած մենանուագին[21]: Կը նուագէ նաեւ 1959 Յունիս 18-ին, Փարիզի Institut Hongrois-ին մէջ[22], որուն յայտագիրին մէջ անոր յօրինումին Թուականը կը նշէ 1941:

Բացի դաշնակի տարբերակէն, կը գտնուին Prélude et Fugue-ի բազմաթիւ տարբերակներ: Ան մաս կը կազմէ ջութակի եւ դաշնակի, Թաւջութակի եւ դաշնակի եօթ շարժումով *Album bien tempéré*-ի Թիւ 6 եւ 7-ին[23]: Կը գտնուին նաեւ երգեհոնի[24], Prélude-ի օպուայի եւ լարային քառանուագի[25] տարբերակները: Առկայ են նաեւ «Խորհուրդ խորին»-ի հանդիսաւոր եւ հասարակ օրերու ձեռագիր մշակումներ՝ Թենորի, քառաձայն երգչախումբի եւ երգեհոնի, Թենորի, քառաձայն երգչախումբի եւ լարային նուագախումբի, քառաձայն երգչախումբի եւ նուագախումբի, քառաձայն երգչախումբի եւ լարային քառանուագի, մեներգի եւ լարային քառանուագի համար[26]:

Կը գտնուի դաշնակի տարբերակին երկու բնագիր: Անոնցմէ մէկը խմորատիպ բազմացուած է, անԹուակիր, տպագրութեան վայրը անյայտ եւ ունի երեքլեզուանի հետեւեալ ընդհանուր խորագիրը. *Armenian Mass; Messe arménienne (O mystère profond); Հայկական*

*պատարագ (Խորհուրդ խորին)*։

Երկրորդ բնագիրը հետեւեալ ձեռագիրն է՝ որ կը պահուի Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Ղազարոսեանի դիւանին մէջ.

Խորագիր՝ Prélude et Fugue (thème liturgique O mystère profond); Cantique de Noël 1.-Du monde céleste les voix arrivent 2.-Réjouissons-nous de ta naissance [Նախաբան եւ Ֆիւկ (եկեղեցական եղանակ՝ Խորհուրդ խորին). Ծննդեան երգ 1.–Որ դասուց երկնաւորաց 2.–Ցնծութեամբ տօնեսցուք]։ Հեղինակ՝ Koharik Gazarossian։ Երաժշտական կազմ՝ մենանուագ դաշնակ։ Թուական՝ Իսթանպուլ, 30 Մայիս 1957։ Թերթ՝ 6։ Գրիչ՝ Գ. Ղազարոսեան։ Գրչատեսակ՝ տուշագիր։ Մեծութիւն՝ 27x35 սմ.։

Ուրեմն, ձեռագիրը կը բովանդակէ երկու ստեղծագործութիւն՝ Prélude et Fugue եւ *Cantiques de Noël*։ Վերջինին մասին *տե՛ս* ստորեւ՝ նոյն խորագիրը կրող ստեղծագործութեան բացատրութիւնը։

Խմորատիպն ու ձեռագիրը կը ներկայացնեն միեւնոյն ստեղծագործութիւնը։ Բայց անոնք իրարու կը լրացնեն տպագրական-ձեռագրական վրիպակներու սրբագրութեան առումով, որով հրատարակութեանս համար օգտուեցայ երկու բնագիրներէն։ Յատկապէս խմորատիպի ձայնակապերուն (legatos) պակասը լրացուցի ձեռագիրէն։

## ԵՐԵՔ ՇԱՐԱԿԱՆ

### ձախ ձեռքի դաշնակի համար

## TROIS CANTIQUES

### pour la main gauche

Անոնք են՝ *Կանոն Աստուածայայտնութեան ճրագալուցի*՝ Հարց «Որ դասուց երկնաւորաց», Ողորմեա «Անկանիմք առաջի քո» եւ *Կանոն Աստուածայայտնութեան Ա. աւուրն*՝ «Անըսկիզբն էակից»-ի («Ցնծութեամբ տօնեսցուք») Գործքը։ Տպագրուած են 1946-ին, *Հասկ* ամսաթերթին մէջ եւ նախատեսուած են նուագուելու դաշնակի կամ երգեհոնի համար[27]։

1959 Յունիս 8-ին, Փարիզի Institut Hongrois-ին մէջ Ղազարոսեան կու տայ դաշնակի մենանուագ մը՝ ամբողջութեամբ կազմուած իր գործերէն։ Յայտագիրը կը սկսի *Deux cantiques* pour la main gauche: a) “Du monde céleste”, b) “Agenouillons-nous devant-toi” [*Երկու շարական* ձախ ձեռքի համար, ա.-«Որ դասուց երկնաւորաց», բ.-«Անկանիմք առաջի քո»][28]։ Յայտագիրին մէջ յօրինումին թուականը կը նշէ 1940։ Ձախ ձեռքի հանգամանքը կը ստիպէ վերանայիլ *Հասկ*ի մէջ տպագրուածները, ուր ձախ ձեռքի մասին ակնարկում չկայ։ Իրօք, անոնք երեքն ալ ձախ ձեռքի յստակ միտում ունին։ Ի տարբերութիւն Ղազարոսեանի սովորական հիւսուածքներէն, այստեղ ձայնամասերը մօտ են իրարու։ Բամբի (bass) դաշնեակները (chord) յաճախ անցանիշեր (syncope) են եւ հանդէս կու գան գլխաւոր բախումներէն ետք՝ մեղեդիի պահուած հնչիւններուն զուգահեռ, որպէսզի ժամանակ ըլլայ ձեռքը փոխադրել դէպի բամբ ձայնամասը եւ հակառակը։ Երկձեռն դաշնակի համար Ղազարոսեան պարզապէս հիւսուածքային շատ աւելի կարելիութիւններ պիտի օգտագործէր։ Դժուար է որոշել՝ թէ ինչու ձախ ձեռքի հանգամանքը չէ յիշատակուած *Հասկ*ին մէջ։

Մեղեդիները քաղուած են Եղիա Տնտեսեանի *Շարական ձայնագրեալ*էն[29]։

Ստեղծագործութիւնները սերտօրէն կապուած են աւանդական մեղեդիներուն հետ։ 1957-ին, կը վերախմբագրէ «Որ դասուց երկնաւորաց»-ը եւ «Անսկիզբն էակից» Գործքը երկձեռն դաշնակի համար՝ մեղեդիական ազատ վերաբերումով եւ գեղարուեստական շատ աւելի լայն ընդգրկումներով (*տե՛ս* յաջորդ ստեղծագործութիւնը՝ *Ծննդեան շարականներ*-*Cantiques de Noël*)։

Յիշեմ նաեւ՝ որ վերոյիշեալ երեքին աւելցնելով հինգ շարական եւս, իբրեւ ութ շարժումով երգաշար՝ դաշնակի նուագակցութեամբ, լոյս կ՚ընծայէ *Հասկ*ին մէջ, 1948-ին[30]։ Արշակ Ալպօյաճեան իր գոհունակութիւնը կը յայտնէ այս վերջին հրատարակութեան նկատմամբ, գրելով՝ որ «ասիկա մեծ ծառայութիւն մըն է վասն զի միջազգայնացնելու կը ծառայէ շարականները, որոնք հայկական ձայնանիշերով դատապարտուած են անմատչելի մնալու նոյնիսկ երաժշտութեան գիտակ հայերու»[31]։

Ձեռագիրներուն մէջ կը գտնուին նաեւ 1948-ի տպագրութեան մէջ տեղ գտած շարականնե-

րուն անտիպ այլ տարբերակներ՝ մեներգի, սրինգի եւ դաշնակի, եւ մեներգի, ջութակի եւ դաշնակի համար[32]: «Ուրախացիր սրբուհի»-ն եւ «Անսկիզբն էակից»-ը մշակուած են եռանուագի համար՝ դաշնակ, ջութակ եւ թաւջութակ[33]:

Շարականներու հանդէպ ունեցած իր վերաբերմունքին մասին Ղազարոսեան կը գրէ հետեւեալը. «Պատերազմի ամբողջ տեւողութեան մնացի Պոլիս, ուր ուսումնասիրեցի արեւելեան երաժշտութիւնը: 1934-ին՝ Պոլիս տպագրուած Ե. Տնտեսեանի շարականները եւրոպական ձայնագրութեան վերածել սկսայ: Աշխատանքս կը կայանայ կրօնական անմահ դրոշմը կրող մեր երգերը, ջութակի, երգի եւ լարաւոր գործիքներու համար պատրաստել: Ներսէս Շնորհալիի՝ «Սիրոյ քո գհուր արկեալ յերկիր», Մովսէս Խորենացիի՝ «Ուրախացիր սրբուհի», «Որ դասուց», «Անսկիզբն էակից» շարականները հիանալի ներշնչարան մը դարձան եւ երբ ձմեռ, Վեհանոյշ Հովիւեանի, տաղանդաւոր ջութակահարուհիին ընկերակցութեամբ (նուագահանդէս մը տուի) եւ հայ ժողովուրդը առաջին անգամ զանոնք ունկնդրեց, զգացի թէ անոր սրտին ճամբէն չեմ շեղած եւ մնացեր եմ տոհմիկ»[34]: Հովիւեանի հետ նուագահանդէսը տեղի ունեցած է 1945 Մարտին, Իսթանպուլի Ինիոն Ֆրանսէզ սրահին մէջ[35]:

Շնորհալիի «Սիրոյ քո հուր»-ի մասին *տե՛ս* ստորեւ՝ *Cantique* ստեղծագործութեան բացատրութիւնները:

*Հասկ*ին մէջ տպագրուած երեք շարականներուն ձեռագիրները չեն յայտնաբերուած, որով հրատարակութեանս հիմքը կիշեալ տպագրութիւնն է:

Ընդհանուր խորագիրը՝ *Երեք շարական*- *Trois cantiques* աւելցուած է իմ կողմէս: Ենթախորագիրները ընդունած եմ *Հասկ*ի տպագրութենէն, որոնք, բնականաբար, գրուած են միայն հայերէն: Հատորիս ամբողջականութիւնը պահպանելու համար՝ ֆրանսերէն համարժէքները աւելցուցի իմ կողմէս, նոյնութեամբ հետեւելով ուրիշ տարբերակներու մէջ Ղազարոսեանի նշած ֆրանսերէն խորագիրներուն:

## ԾՆՆԴԵԱՆ ՇԱՐԱԿԱՆՆԵՐ
## CANTIQUES DE NOËL

*Տե՛ս* նախորդ ստեղծագործութեան՝ *Երեք շարական*ի բացատրութիւնները:

Ինչպէս նշեցի *Հայկական պատարագ* «Խորհուրդ խորին» ստեղծագործութեան բացատրութեան մէջ, ձեռագիրը կը բովանդակէ երկու ստեղծագործութիւն: Ահաւասիկ ձեռագիրը.

**Խորագիր**՝ Prélude et Fugue (thème liturgique O mystère profond); Cantique de Noël 1.-Du monde céleste les voix arrivent 2.-Réjouissons-nous de ta naissance [Նախաբան եւ Ֆիւկ (եկեղեցական եղանակ՝ Խորհուրդ խորին). Ծննդեան երգ 1.-Որ դասուց երկնաւորաց 2.-Ցնծութեամբ տօնեսցուք]: **Հեղինակ**՝ Koharik Gazarossian: **Երաժշտական կազմ**՝ մենանուագ դաշնակ: **Թուական**՝ Իսթանպուլ, 30 Մայիս 1957: **Թերթ**՝ 6: **Գրիչ**՝ Գ. Ղազարոսեան: **Գրչատեսակ**՝ տուշագիր: **Մեծութիւն**՝ 27x35 սմ.:

## ՆԱՅԵԱՑ ՍԻՐՈՎ
## CANTIQUE

Ղազարոսեան հիմնանիւթը (theme) ընդունած է *Ժամագիրք*ի աղաղականի Երեկոյեան ժամու «Նայեաց սիրով»-էն («Սիրոյ քո հուր»), որուն կցած է ժողովրդական պարեղանակ մը:

Ս. Պետրոսեանի մօտ պահուող դաշնակի անթուակիր ինքնագիրը կը գտնուի 19 թերթէ բաղկացած թղթածրարի մը մէջ, որ կը բովանդակէ նաեւ ստեղծագործութեան վեց այլ տարբերակներ զանազան նուագարանային եւ երգչային կազմերու համար՝ մեներգ եւ դաշնակ (Պոլիս, 1955), մեներգ, սրինգ եւ լարայիններ (անթուակիր), սրինգ եւ դաշնակ (Պոլիս, 1953)[36], մեներգ, սրինգ եւ դաշնակ (անթուա-

կիր), երգեհոն (անթուակիր)[37] եւ թաւջութակ եւ դաշնակ (անթուակիր)[38]: Այս թղթածրարի մեներգ-դաշնակի տարբերակին տիտղոսաթերթն ունի հետեւեալ գրութիւնը՝ «*Նայեաց սիրով,* Շարական՝ Ներսէս Շնորհալիի (կոմիտասեան եղանակիւ)»:

Գոյութիւն ունի նաեւ առանձին ձեռագիր մը՝ որ կը բովանդակէ ստեղծագործութեան զուգերգի (սոփրանօ-թենոր) եւ դաշնակի տարբերակ մը (Դեկտեմբեր 1955, Պոլիս):

Դաշնակի տարբերակը խորագրուած է *Cantique*: Հայերէն խորագիրը աւելցուած է իմ կողմէս, հետեւելով այլ ձեռագիրներու վրայ դրոշմուած հայկական խորագիրին: Դաշնակի ձեռագիրը ունի բազմաթիւ սրբագրութիւններ, երբեմն դժուար ընթեռնելի: Փորձած եմ հրատարակութեանս մէջ որքան կարելի է հարազատութեամբ արտացոլել բնագիրը:

## ՆԱԽԱԲԱՆՆԵՐ
## PRÉLUDES

Պոլսոյ մէջ, Թորոս Ազատեան Ղազարոսեանին կը տրամադրէ Կոմիտաս Վարդապետի գրառած եօթանասուն ժողովրդական անտիպ երգեր: Երաժշտահանը 1942-ին կը ձեռնարկէ անոնցմէ քանի հատի դաշնակումի աշխատանքին՝ մեներգի համար դաշնակի նուագակցութեամբ, զոր կը լրացնէ 1947-ին եւ կը յաջողի տպագրել 1950-ին[39]:

Նախ քան տպագրութիւնը՝ 1946-ին, Ղազարոսեանի այս դաշնակումները՝ շարականներու դաշնակումներուն հետ միասին, կ'արժանանան Կիլիկիոյ Կաթողիկոս Տ. Տ. Գարեգին Ա.ի օրհնութեան գիրին[40]:

Անոնցմէ չորսը՝ *Աղջի, մէրըդ մեռել ա, Գիշերուան լուսնեակը, Աղջի անունըդ Շուշան* եւ *Կալերի ճամբէն դուզ ա,* կը վերածէ ջութակի եւ դաշնակի՝ *Préludes* (Նախաբաններ) ընդհանուր խորագիրով[41]: Այս չորսը, 1947-ին Իսթանպուլի մէջ խմբորատիպ կը բազմացնէ իբրեւ մենանուագ դաշնակի նուագաշար՝ նոյնպէս *Préludes* ընդհանուր խորագիրին տակ, փոխելով չարժումներուն հերթականութիւնը: Այս խմբորատիպ հրատարակութիւնն է՝ զոր կը ներկայացնեմ հրատարակութեանս մէջ:

Կը գտնուի նաեւ *Աղջի, մէրըդ մեռել ա*ի ձեռագիր երկու տարբերակ եւս՝ արական քառաձայն a քափելլա երգչախումբի համար (1945, Պոլիս)[42], եւ լարային քառանուագի համար (1961, Փարիզ)[43]:

Թ. Ազատեանի ձեռագիրը չուտով կ'առաքուի Երեւան եւ գրառումները մաս կը կազմեն Կոմիտաս Վարդապետի *Ազգագրական ժողովածու*ի Բ. հատորին[44]:

Ուրեմն, Ղազարոսեան եղած է առաջիններէն մէկը՝ որ ձգտած է գործնականօրէն բացայայտել Կոմիտաս Վարդապետի գրառումներուն արժէքն ու ներունակութիւնը:

Միւս կողմէն՝ անոնց յայտնաբերումը բարեբար ազդեցութիւն ունեցած է Ղազարոսեանի յօրինողական լեզուամտածողութեան վրայ, ինչպէս կը բացայայտէ հեղինակը հետեւեալ գրութեան մէջ.

«Հրաշքով մը 1943-ին ձեռս ինկան Վարդապետին երկու տետրակները, որոնք կը պարունակէին եօթանասուն անտիպ ժողովրդային երգեր, գրի առնուած 1913-ին արեւելեան ձայնագրութեամբ:

«Այդ երգերը ընել տուին ինձ աշխատանք մը, զոր Փարիզի Երաժշտանոցի ուսուցիչներս, իրենց բոլոր հմտութեամբ, անկարող պիտի ըլլային ընել տալու: Ստիպեցին, որ սովրիմ արեւելեան ձայնանիշներն ու եղանակները իրենց դարձուածքներով, ուսումնասիրեմ կերպը դաշնաւորումին, որ Վարդապետինն է, ու ի վերջոյ թափ տամ այն կեանքին, որ կ'եռայ ներսս, երբ կը լսեմ երգը ցեղիս:

«1942-էն ի վեր թափած աշխատութիւնս ցոյց տուաւ ինծի ուղին, որուն ամէն հայ երգահան պարտաւոր է հետեւիլ, եթէ կ'ուզէ, որ իր կտորները կրեն տոհմային դրոշմ, գոյն եւ ոճ, որոնք միմիայն մերն են:

«Եօթանասուն երգերը մէկ ամսուան ընթացքին վերածուած էին եւրոպական երաժշտութեան ու արդէն հարուստ ներշնչարան մը կը պարգեւէին ինծի:

«Յուզում, հիացում, խանդավառութիւն իրար կը յաջորդէին մէջս, ու կը դաշնաւորէի առաջին երգը [«Աղջի, մէրըդ մեռել ա»], որ ողբ մըն է 5/4 չափով, ԲՋ եղանակ, «Երեւանի նահանգի Սուրմալու գաւառի Էվջիլար գիւղում» երգուած: Երաժշտագէտ ու անմոռանալի մեր Վարդապետը այնպիսի կանոնաւորութիւ-

նով մը նոթ առած էր, – արեւելեան ձայնանիշերը, ժողովրդական երգը իր զանազան տուներով, երգող գիւղացիին ո՛ր գաւառէն, ո՛ր գիւղէն ըլլալը, – որ բնականօրէն պարտք կը դնէի վրաս այդ երգով ամիսներ տարուելու, արտաքին անցուդարձերուն խորը փնտռելու, ներշնչուելու:

«Ողբը դաշնաւորուած է, կը խորհիմ, այնպէս, ինչպէս Վարդապետը պիտի ուզէր որ ըլլար, պարզ մտացիօրէն զգայուն ու գիւղը վերյիշել տուող բնոյթով: Ինձ այսպէս կը թուէր, թէ վերջապէս երաժշտական աշխարհի մէջ *հայերէն սկսեր եմ խօսիլ.* արդեօ՞ք հայերէնն ալ զգալ գիտէի, թէ ի՞նչ էր: Ատոր գիտակցելու համար պէտք էր պահ մը հեռու նետել եւրոպական երաժշտութեան պաշարս, զոր 13 տարուան միջոցին հաւաքեր էի ու դառնալ գիտունօրէն տգէտ ու իմաստունօրէն պարզ...:

«Երկրորդ աշխատանքն կը չինէր մահերգ մը այդ ողբի վրայ. հոս եւրոպական մշակոյթս չարհամարհեցի, ալ վտանգէ զերծ էի, չէ որ հայրենի հողս առած էի իբր մեկնակէտ ու շունչըս կը մնար հարազատօրէն հայ, ընդլայնելով առանց վրդովումի երգը Վարդապետին, զոր ունկնդիրը իրը կ'ընէ այնքան դիւրութեամբ»[45]:

Յստակ է՝ որ Կոմիտաս Վարդապետի գրառումներուն ուսումնասիրութիւնը Ղազարոսեան շրջադարձ մը կը սեպէ իր ստեղծագործական կեանքին մէջ: Միւս կողմէն, հեղինակը յստակօրէն ցոյց կու տայ այդ գրառումներուն նկատմամբ ցուցաբերած երկու մօտեցումները: Առաջինը դաշնակում հասկացութիւնն է՝ այսինքն անխաթար պահելով մեղեդիները անոնց միացնել նուագակցութիւն, իսկ երկրորդը՝ նոյն մեղեդիներուն վրայ ազատ ստեղծագործութիւններու յօրինումն է: Ինչպէս վերը նշեցի՝ ասիկա կը վերաբերի աւանդական եղանակներու վրայ յօրինուած Ղազարոսեանի բոլոր գործերուն:

Կարեւոր է նաեւ նշել՝ թէ ժողովրդական երգերուն հետ ծանօթութիւնը տեղի ունեցաւ միաժամանակ հոգեւոր երաժշտութեան ծանօթութեան հետ (*տե՛ս Երեք չարական*-*Trois catiques*-ի վերոյիշեալ բացատրութիւնները): Ղազարոսեան իր գործերուն մէջ հաւասար կարեւորութիւն տուած է ժողովրդական եւ հոգեւոր երաժշտութիւններուն:

1948 Յունուար 29-ին, Միացեալ Նահանգներու երկրորդ մենանուագին՝ որ տեղի կ'ունենայ Նիւ Եորքի Քարնէկի Հոլին մէջ, կը նուագէ *Popular airs* (Ժողովրդական եղանակներ) (1946) խորագիրով երկու գործ՝ “Marche funèbre” (Սգոյ քայլերգ) եւ “Danse” (Պար): Անոնք հաստատապէս *Préludes*-ի առաջին երկու մասերն են՝ «Աղջի, մէրըդ մեռել ա» եւ «Աղջի անունդ Շուշան»: Այս երկու մասերը՝ արդէն մեզի յայտնի ներկայ խորագիրներով, կը կատարէ 1959 Յունիս 8-ին, Փարիզի Institut Hongrois-ի հեղինակային մենանուագին (յայտագիրին մէջ անոնց յօրինումի թուականը նշուած է 1942)[46], 1959 Դեկտեմբեր 14-ին՝ Պէյրութի Ամերիկեան Համալսարանի West Hall-ին մէջ[47], 1962 Ապրիլ 6-ին՝ Իսթանպուլի Սինեմա Սարային մէջ, բարեսիրական նուագահանդէսի մը ընթացքին[48]:

Այս ստեղծագործութեան ձեռագիրը չէ յայտնաբերուած: Միակ աղբիւրը խմորատիպ տպագրութիւնն է, Իսթանպուլ, 1947:

Ստեղծագործութիւնը ծանօթ է նաեւ *Les arméniennes* (Հայուհիները) ենթախորագիրով:

## ՈՒԹ ՓՈՓՈԽԱԿ
## ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՂԱՆԱԿԻ ՎՐԱՅ
## HUIT VARIATIONS
## SUR UN THÈME POPULAIRE DE PÈRE KOMITAS

Փոփոխակները (variations) հիմնուած են Կոմիտաս Վարդապետի դաշնակի «Շուշիկի» պարին վրայ: Ղազարոսեան յատուկ սէր ցուցաբերած է Կոմիտաս Վարդապետի դաշնակի պարերէն յատկապէս «Շուշիկի»-ին հանդէպ: 1934 Դեկտեմբեր 1-ին, Փարիզի Maison Pleyel-ի մէջ տուած իր անդրանիկ նուագահանդէսին կը նուագէ այդ ժամանակ մատչելի վեց պարերէն երկուքը՝ «Երանգի» եւ «Շուշիկի»[49]:

1936 Նոյեմբեր 26-ին, Իսթանպուլի Սինէ Սարայի մենանուագին նոյնպէս կ'ընտրէ Կոմիտաս Վարդապետի միեւնոյն պարերը՝ «Երանգի» եւ «Շուշիկի»[50]:

1939 Մայիսին, Փարիզի Salle Gaveau-ին մէջ, Արմենակ Շահ-Մուրատեանի յիշատակին

նուիրուած հանդիսութեան, Ղազարոսեան կը նուագէ երկու գործ: Առաջինը «Շուշիկի»-ն էր՝ առանց «Երանգի»-ի, որ քայլ մը եւս էր դէպի այս գործին իւրացումը: Երկրորդ գործն էր ««Տէր ողորմեա»ին մէկ փոփոխակը, զոր ինքն իսկ դաշնաւորած էր այնքան ճարտարօրէն»[51]: Փոփոխակներուն եօթներորդը «Տէր ողորմեա» մըն է, եւ հաւանական է՝ որ այս նուագահանդէսին կատարածը եօթներորդ փոփոխակն ըլլայ:

*Ութ փոփոխակը* կ'ընդգրկէ Միացեալ Նահանգներու իր առաջին մենանուագին մէջ, որ տեղի կ'ունենայ 1947 Նոյեմբեր 27-ին, Նիւ Եորքի Times Hall-ին մէջ[52]:

Զայն կը նուագէ 1950 Փետրուար 4-ին, Փարիզի Salle Gaveau-ի մենանուագին[53]: Ստեղծագործութիւնը «կը բացայայտէ զգայուն յատկութիւն մը» կը գրէ *Հերալտ Թրիպիւն*ի քննադատ Էտմունտ Փենտըլթոն[54]: Մարգարիտ Բաբայեան դիտել կու տայ՝ որ «նշանաւոր գործերէ ետք, Գոհարիկ Ղազարոսեան կը յայտնուի իբրեւ արժէքաւոր երաժշտահան՝ նուագելով *Ութ փոփոխակներ Հ. Կոմիտաս Վ.ի հայկական ժողովրդական հիմնանիւթի վրայ*: Գործը՝ ուր փոփոխակները արդի նկարագիր ունին, խիստ բազմազան են, առանց կորսնցնելու հայրենի հողը եւ ունկնդիրը տանելով դէպի սկզբնական հիմնանիւթը»[55]:

Կը նուագէ 1954 Նոյեմբեր 30-ին, Տիւսելտորֆի Die Brücke կեդրոնին մէջ տուած արեւելեան երաժշտութեան մենանուագին[56]:

Կը կատարէ 1954 Դեկտեմբեր 7-ի մենանուագին, Փարիզի Salle Pleyel-ին մէջ[57]: Փոփոխակներուն «իւրաքանչիւրը «Փօէմ» մը կարելի է նկատել», դիտել կու տայ Մ. Բաբայեան[58]:

Կը նուագէ նաեւ 1955 Ապրիլ 2-ին, Իսթանպուլի Կալաթասարայ Լիսէսի Քոնֆերանս Սալոնունտային մէջ տուած մենանուագին[59], ինչպէս նաեւ 1959 Յունիս 18-ին, Փարիզի Institut Hongrois-ի հեղինակային մենանուագին[60]՝ յայտագիրին մէջ յօրինումին թուականը նշելով 1938:

Զայն նուագած են նաեւ այլ դաշնակահարներ: Օրինակ, 1954 Մարտ 12-ին, École Normale de Musique-ին մէջ, Տիրուհի Զարափեան իր մենանուագին ընթացքին կը նուագէ զայն: Այս առիթով՝ ստեղծագործութիւնը «մեզի փոխադրեց մեր հեռաւոր երկիրը» կը գրէ Մ. Բաբայեան[61]:

Ս. Պետրոսեանի ձեռագիրներուն մէջ կը գտնուին ստեղծագործութեան երկու այլ տարբերակներ եւս՝ թաւջութակի եւ դաշնակի[62], եւ սրինգի եւ լարային քառանուագի համար (1938)[63]: Եօթներորդ փոփոխակը հանդիսացող «Տէր ողորմեա»-ն՝ իբրեւ ինքնուրոյն գործ, դաշնակած է մեներգի եւ դաշնակի համար, անթուակիր ձեռագիրին վրայ նշելով՝ «Կոմիտասեան եղանակ»:

Դաշնակի տարբերակէն կը գտնուի երեք ձեռագիր, որոնք կը պահուին Սօնա Պետրոսեանի մօտ.

Ա.-Խորագիր՝ Huit variations sur un thème populaire [Ութ փոփոխակ ժողովրդական եղանակի վրայ]: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Երաժշտական կազմ՝ մենանուագ դաշնակ: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 4: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ տուշագիր, սրբագրութիւններ կարմիր մատիտով: Մեծութիւն՝ 26.8x35 սմ.:

Բ.-Խորագիր՝ Huit variations sur un thème populaire de père Komitas [Ութ փոփոխակ Կոմիտաս Վարդապետի ժողովրդական եղանակի վրայ]: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Երաժշտական կազմ՝ մենանուագ դաշնակ: Վայր՝ Իսթանպուլ: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 5: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ կապոյտ չոր մելան, սեւ մելանով յաւելագրութիւններով: Մեծութիւն՝ 25x35 սմ.:

Գ.-Խորագիր՝ Huit variations sur un thème du Révérend père Komitas [Ութ փոփոխակ Վերապատուելի Կոմիտաս Վարդապետի եղանակի վրայ]: Հեղինակ՝ Alice Coharik Gazarossian: Երաժշտական կազմ՝ մենանուագ դաշնակ: Վայր՝ Իսթանպուլ: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 4: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ տուշագիր, մատիտագիր սրբագրութիւններով: Մեծութիւն՝ 27.1x35 սմ.:

Գ.-ի նոթագրութիւնը նուազ յստակ է՝ բազմաթիւ սրբագրութիւններով, որոնք կը յանգին Ա.-ին եւ Բ.-ին: Ա.-ը եւ Բ.-ը մեծ մասամբ նոյնն են, բացի ութերորդ փոփոխակի վերջաւորութենէն եւ քանի մը երանգանիշերէ ու ձայնակապումներէ: Հրատարակութեանս համար հիմնուեցայ Ա.-ին վրայ, որուն որոշ վրիպակները եւ ոչ-յստակ կէտերը ամբողջացուցի Բ.-էն:

## ՌԱՍՏ ՓԵՇՐԵՒ. ՆԱԽԱԲԱՆ ԵՒ ՖԻՒԿ
## RASD PECHREV: PRÉLUDE ET FUGUE

Պատմական տեղեկութիւններ այս գործին մասին չկրցայ յայտնաբերել:

Ձեռագիրը կը պահուի Սօնա Պետրոսեանի մօտ.

Խորագիր՝ Rasd Pechrev [Ռաստ Փեշրեւ]: Հեղինակ՝ K. Gazarossian: Երաժշտական կազմ՝ մենանուագ դաշնակ: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 3: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան: Մեծութիւն՝ 20.9x29.6 սմ.:

Ֆիւկը օգտագործած է նաեւ իբրեւ Լարային Քառանուագի չորրորդ (վերջին) շարժում[64]:

## ՍՈՆԱԹ
## SONATE

Սոնաթը առաջին անգամ կատարուած է հեղինակին կողմէ, 1956 Հոկտեմբեր 25-ին, Փարիզի École Normale de Musique-ի սրահին մէջ՝ ժամանակակից երաժշտահաններու նոր գործերու նուիրուած նուագահանդէսին, որ մաս կը կազմէր Le triptyque երաժշտական ընկերութեան կազմակերպած նուագահանդէսներու շարքին[65]:

Մարգարիտ Բաբայեան կու տայ առաջին ունկնդրութեան տպաւորութիւնները.

«Հետաքրքրական եմ համարում իր [իմա՝ Ղազարոսեանի, Հ. Ա.] ներշնչումները յայտնել: Առաջին մասը բանաստեղծ Արման Խարպութեանի գործը կարդալէ ետք:

«Երկրորդը պատկերն է զուարթ ու կենդանի մէկի:

«Երրորդը.-Ներսէս Շնորհալիի շարականէն ներշնչուած «Սիրոյ քո հուր անկեալ», որ հիանալի է իր պարզ, անկեղծ արտայայտութեամբ:

«Չորրորդը երիտասարդ գրագիտուհի Հուրի Պուտաքեանի Կոյս քերթուածքի նկարչական տպաւորութեան արտայայտութիւնն է:

«Ջերմ ծափերը ստիպեցին մի կտոր եւս աւելացնել իր յայտագրին, «Տանսոն» - պարենք, որ մի տեսակ հրաման է պարելու եւ կու գայ երգահանէն:

«Ներկաներէն շատ երաժշտագէտներ եւ երգահաններ նոյն տպաւորութիւնը ունեցան, ինչ որ վաղուց իմ համոզմունքն է: Օրիորդը շատ մեծ պատրաստութիւն ունենալով եւրոպական երաժշտութեանը եւ աշխատած լինելով նշանաւոր երգահանների հետ, խորապէս պահպանած է իր արեւելեան, հայկական երաժշտական անհատականութիւնը եւ մեծ հմտութեամբ եւ նրբութեամբ իրար հետ բերած, ձուլած է այդ զանազան տարրերը եւ միութիւն ստեղծած»[66]:

1958 Մայիս 27-ին, հեղինակին կատարումով Սոնաթը կը սփռուի Վիեննայի ձայնասփիւռէն[67]:

Կը կատարէ նաեւ 1959 Յունիս 18-ին, Փարիզի Institut Hongrois-ի մենանուագին[68]:

Սոնաթին չորս շարժումները համադրուած են նախապէս յօրինուած գործերէ:

Առաջին շարժումը *Album bien tempéré* (Բարեխառնեալ ալպոմ) ստեղծագործութեան (*տե՛ս* ստորեւ՝ ***Բարեխառնեալ ալպոմ***-*Album bien tempéré*-ի բացատրութիւնները) թիւ 24-ն է՝ *սի փոքրալար* “Poème varié” (Տարբերակուած բանաստեղծութիւն), ներշնչուած Արման Խարբութեանի բանաստեղծութիւններէն: Զայն նախապէս նուագած է Bien tempéré (Բարեխառնեալ) մենանուագներուն (այս մենանուագներուն մասին *տե՛ս* ***Բարեխառնեալ ալպոմ***-*Album bien tempéré*-ի բացատրութիւնները)՝ 1954 Դեկտեմբեր 7-ին, Փարիզի Salle Chopin-Pleyel-ին մէջ[69]:

Երկրորդ շարժումը *Album bien tempéré*-ի թիւ 7-ն է՝ *մի կիսվար մեծալար* “Portrait de famille (Angèle)” (Ընտանիքի մը պատկերը (Անժէլ)), զոր նախապէս նուագած է Bien tempéré մենանուագներուն՝ 1954 Մարտ 9-ին, Փարիզի Salle Chopin-Pleyel-ին մէջ[70] եւ 1954 Մարտ 29-ին, Ցիւրիխի Kongresshaus Kammermusiksaal-ին մէջ[71]:

Երրորդ շարժումը «Նայեաց սիրով» շարականի ընդլայնուած վերծանումն է: Այս եղանակին երաժշտահանը բազմիցս դիմած է՝ ստեղծելով տարբեր նուագարաններու համար գործեր (*տե՛ս* վերը՝ ***Նայեաց սիրով***-*Cantique* ստեղծագործութեան բացատրութիւնները):

Չորրորդ շարժումը *Album bien tempéré*-ի թիւ 17-ն է՝ *լա կիսվար մեծալար* “Moto perpetuo” (Յաւերժ շարժում): Վերջինին *Album*

*bien tempéré*-ի մէջ դասաւորուած ձեռագիրը կը կրէ Թուական՝ Իսթանպուլ, 27 Մայիս 1955, որ կը փաստէ՝ թէ նոյնպէս գոյութիւն ունեցած է Սոնաթէն առաջ:

Սոնաթին ձեռագիրը կը գտնուի Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարանին մէջ.

Խորագիր՝ Sonate: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Երաժշտական կազմ՝ մենանուագ դաշնակ: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 12: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան, սրբագրութիւններ մատիտով, կարմիր մատիտով եւ կապոյտ չոր մելանով: Մեծութիւն՝ 25x35.1 սմ.:

## ԲԱՐԵՓՈԽԵԱԼ ԱԼՊՈՄ
## ALBUM BIEN TEMPÉRÉ

Երաժշտահանը երկար տարիներ աշխատած է ամբողջացնելու 24 շարժումէ բաղկացած դաշնակի շար մը՝ *Album bien tempéré* (Բարեփոխեալ ալպոմ), որմէ քանի մը շարժում չէ հասած աւարտել:

Bien tempéré (Բարեփոխեալ) խորագիրով հասկացութիւն մը չատոնց գրաւած էր Ղազարոսեան դաշնակահարին: 1940-ականներու վերջաւորութեան, ան կը ձեռնարկէ Bien tempéré խորագիրով մենանուագներու շարքին, ուր իւրաքանչիւր մենանուագին պիտի կատարէր մէկ ձայնակայքի (tonality) մէջ գրուած յօրինումներ:

Իր աշակերտուհիներէն Ծաքէ Ներսէսեան յետագային պիտի յիշէր Bien tempéré-ի գաղափարի հաստատագրումին առաջին պահերը.

«1945-ի վերջերը թէ 1946-ի սկիզբը, լաւ չեմ յիշեր, Զորեքշաբթի օր մը երբ դասի գացի, տեսայ զինք սենեակին մէջտեղ մատիտ ի ձեռին, դաշնակի վրայ, թիկնաթոռներու վրայ, սեղանի վրայ ցրուած նօթատետրերու միջեւ: Կարծէք բաներ մը կը փնտռէր. «Ի՞նչ կը փնտռէք» օրիորդ, հարցուցի: Մեծ խանդավառութեամբ ցոյց տուաւ թուղթ մը որուն վրայ գրուած էին իր «24 բրօկրամները»:

«Ուրախ էր: «24 յայտագիր կազմեցի, ըսաւ, իւրաքանչիւրը մէկ թօնալիթէի վրայ, սկսելով տօ մաժէօրէն մինչեւ սի մինէօր: Բրօկրամ Պիէն Թանբէրէ պիտի անուանեմ զանոնք: Ամէն մէկը պիտի սկսի Պախէն Բրէլիւտ եւ ֆիւկէն ու պիտի շարունակէ մինչեւ ժամանակակից հեղինակներ ժամադրական կարգով»[72]:

1950-ին տպագրուած ֆրանսերէն հարցազրոյցի մը ընթացքին՝ պատասխանելով Փօլ Վիանիսի հարցումներուն, Ղազարոսեան կը փորձէ բացատրել այս մենանուագներու շարքին գեղագիտական իմաստը.

«-Եթէ ճիշդ հասկցայ՝ կ'ըսեմ օր. Ղազարոսեանին, ձայնակայքը յենարանն է, հենքը՝ որ յայտագիրի մը բոլոր գործերը կը միացնէ իրարու:

«-Այո: Ինչպէս գիտէք՝ իւրաքանչիւր ձայնակայք ունի յատուկ նկարագիր մը, մասնաւոր «գոյն» մը, եւ հետաքրքրական է այս առումով մերձեցնել, համեմատել երաժշտահաններու կատարած զանազան գործածութիւնները:

«-Եւ ասիկա արդեօք առաջ չի՞ բերեր որոշ միօրինակութիւն մը:

«-Ամենեւին: Երաժշտահաններու խառնուածքներուն այլազանութիւնն անսահման է: Այս երեւոյթը խմբաւորելով եւ ժամանակագրականօրէն կարգաւորելով, թոյլ կու տայ հասնելու երաժշտական աւելի վսեմ հաճոյքի մը՝ որ զուգահեռ կ'ընթանայ, այլապէս, ուսուցողական կենդանի հետաքրքրութեան հետ: Երաժշտական ձեւերու ուսումը, օրինակ, այսպիսով կը դառնայ աւելի գրաւիչ, աւելի կենդանի:

«-Նման յայտագիրներու կազմութիւնը անկասկած կը պահանջէ դժուարին նախապատրաստական աշխատանք:

«-Յաճախ պէտք է դիմել, արդարեւ, քիչ ծանօթ, մոռցուած, նոյնիսկ լքուած գործերու, բայց որոնք կը կազմեն իսկական, հարուստ գանձ մը:

«-Եւ բաց աստի, ունիք նաեւ ժամանակակից գործեր:

«-Անտարակոյս: Սկզբունքօրէն, իւրաքանչիւր յայտագիր կ'աւարտեմ իմ յօրինումներէս մէկ հատով: Սակայն եւ այնպէս, որոշ գործեր չեն կրնար կերպարանալ իմ յայտագիրներուս մէջ...

«-....արտաձայնակայքի [atonality] կողմնակիցները, անշո՛ւշտ»[73]:

Bien tempéré անուանումը ընդունած է Պախի 24 Փրելիւտ եւ Ֆիւկերէն, բնականաբար,

ղայն գործածելով այլ հարթութեան վրայ: Մէկ կողմէն Ղազարոսեանի անսահման սէրն էր Պախի այս ժողովածուին նկատմամբ, միւս կողմէն ձայնակայքային կազմակերպուածութիւն մը գտնելու իղձը իր մենանուագներուն մէջ, որ սկսելով *տօ մեծալար*էն, Պախի ժողովածուի նմանողութեամբ՝ 24 մենանուագի ընթացքին պիտի ամբողջացնէր բոլոր մեծալար-փոքրալար ձայնակայքերը:

Պախի 24 Փրելիւտ եւ Ֆիւկերուն հանդէպ տածած սէրը եւ ձայնակայքային յարաբերակցութեան եւ միասնութեան գաղափարը ի յայտ եկած են տակաւին 1942-ին՝ Իսթանպուլի Ամերիկեան Քոլէժի մենանուագին, երբ իւրաքանչիւր ստեղծագործութենէ առաջ կը նուագէ տուեալ ստեղծագործութեան ձայնակայքին համապատասխանող Պախի Փրելիւտ եւ Ֆիւկ մը, օրինակ՝ Շումանի *տօ մեծալար* Թոքաթային կը նախորդէ Պախի *տօ մեծալար* Փրելիւտ եւ Ֆիւկը, Շոփէնի *սոլ փոքրալար* Պալատին՝ Պախի *սոլ փոքրալարը*, Լիսթի *ֆա փոքրալար* էթիւտին՝ Պախի *ֆա փոքրալարը*[74]: «Տեսակ մը ազգականական կապ ուզեր էի ստեղծել Պախի եւ միւս երգահաններու միջեւ «թօնալիթէ»ն ընտրելով իբր կամուրջ, բայց վերջնական ձեւ մը չէր այս», կ'ըսէ երաժշտահանը այս մենանուագին մասին[75]:

1945-ին թուղթի վրայ կը դասաւորէ առաջին յայտագիրը՝ *տօ մեծալար*, որ հիմք պիտի հանդիսանար միւս 23-ին: Կ'որոշէ իւրաքանչիւր յայտագիր սկսիլ Պախի Փրելիւտ եւ Ֆիւկով եւ չարունակել ժամանակագրական յաջորդականութեամբ[76]:

Այս յղացումը հասուննալով առաջին անգամ կը յաջողի կիրարկել Միացեալ Նահանգներուն մէջ: Calvary Baptist Church-ին մէջ, 1948 Յունիս 6-ի մենանուագը կը կոչուէր *Well Tempered Program* (Բարեփոխեալ յայտագիր), եւ կը բովանդակէր *տօ մեծալար*ով գործեր: Իր գործերէն տակաւին չկային այստեղ[77]: Այս առաջին իրականացումին մասին երկու ու կէս տարի ետք այսպէս պիտի գրէր հեղինակը. «Փափաքս կ'իրագործուէր եւ խոէջալ սրահի մը կրօնական հաստատութեան մէջ կը նուագէի, փափաքած էի որ ծափահարութիւնը չգար ընդմիջելու կտորները չղթայուորումը. եկեղեցւոյ մթնոլորտը օգնեց բնականօրէն փափաքիս եւ օրուայ վերացումիս»[78]:

Մղուելով յաջող ընդունելութենէն, Յուլիս 27-ին, նոյն եկեղեցիին մէջ կու տայ *Well Tempered* երկրորդ յայտագիրը՝ *տօ փոքրալարի* մէջ[79], ուր նոյնպէս իր յօրինումները կը բացակայէին[80]:

Նոյեմբեր 18-ին, Նիւ Եորքի Times Hall-ին կու տայ խառն յայտագիրով մենանուագ մը[81], «բայց ներքին գոհացումս բացակայ էր», յետագային դիտել կու տայ դաշնակահարը[82]:

1949 Յունուար 12-ին, Րիվըրսայտ Տրայվ Զըրչին մէջ կը նուագէ *Well Tempered* երրորդ յայտագիրը՝ *տօ կիսվեր մեծալար* կամ *ռէ կիսվար մեծալար*[83]:

Յունուար 30-ին, Calvary Baptist Church-ը կը հրաւիրէ Ղազարոսեանին նուագելու *Well Tempered* չորրորդ յայտագիրը՝ *ռէ կիսվար փոքրալար*[84]:

Ուաշինկթընի Հայ Ուսանողական Միութեան կազմակերպութեամբ՝ Chevy Chase Woman's Club-ի 1949 Մարտ 13-ի մենանուագը ունէր հետեւեալ վերտառութիւնը. *Third "Well Tempered" Program in C sharp major or D flat major* (Երրորդ «Բարեփոխեալ» յայտագիր տօ կիսվեր մեծալարի կամ ռէ կիսվար մեծալարի մէջ): Յայտագիրը կ'աւարտէր չորս մասէ բաղկացած իր Suite-ով՝ "Prélude", "L'oiseau à ma fenêtre", "Paresse", Dansons!"[85]: Ինծի մատչելի ձեռագիրներուն մէջ *տօ կիսվեր մեծալար* կամ *ռէ կիսվար մեծալար* Suite չի գտնուիր: Հաւանաբար, յատուկ փոխադրութիւն մը կատարած է, որ տակաւին չէ յայտնաբերուած:

1949 Նոյեմբեր 30-ին, The American Students' and Artists' Center-ին մէջ տեղի կ'ունենայ *Well Tempered Program in C Major* (Բարեփոխեալ յայտագիր տօ մեծալարի մէջ), որ կ'աւարտէր իր յօրինած "Choral"-ով (Հայր մեր)[86]:

1949 Յունիս 6-ին, Ժընեւի ձայնասփիւռէն կը նուագէ Bien tempéré-էն կտորներ, իսկ աշնան՝ Փարիզի երկու ամերիկեան ակումբներուն համար կը կատարէ *տօ մեծալար* յայտագիրը[87]:

1950 Փետրուար 4-ին, Salle Gaveau-ի մենանուագը կազմուած էր խառն յայտագիրով[88]:

1950 Մարտ 23-ին, Լոնտոնի Wigmore Hall-ին մէջ՝ *Well-Tempered Programme in C major* (Բարեփոխեալ յայտագիր տօ մեծալարի մէջ), որ կ'աւարտէր Ղազարոսեանի "Choral"-ով (Հայր մեր)[89]:

Մինչեւ այստեղ, տակաւին չէր հասունցած Bien tempéré-ի յօրինողական կողմը, այսինքն՝

չկար այս խորագիրը կրող նուագաշարի ստեղծագործումի մը յստակ գաղափարը: Այս նուագաշարին մաս կազմելիք չարժումները նախապէս կը բանէին իբրեւ ինքնուրոյն յօրինումներ: Օրինակ, "Choral"-ը (Հայր մեր)՝ իբրեւ անկախ ստեղծագործութիւն, նուագած է 1949 Նոյեմբեր 30-ի Ամերիկայի եւ 1950 Մարտ 23-ի Լոնտոնի Well Tempered մենանուագներուն վերջաւորութեան, առանց նշելու՝ որ ան կը հանդիսանայ *Album bien tempéré*-ի (Բարեփոխեալ ալպոմ) թիւ 1-ը:

1951-ին մեծ թափ եւ հետեւողականութիւն կը ստանայ Bien tempéré մենանուագներուն շարքը եւ կը գոյանայ ու կը կայունանայ նոյն խորագիրով նուագաշարին առաջին վեց կտորները: 1951 Մարտ 3, 6, 10, 13, 17 եւ 20-ին վեց յաջորդական մենանուագներ տեղի կ'ունենան Փարիզի École Normale de Musique-ին մէջ, ունենալով հետեւեալ ընդհանուր խորագիրը. *Première série (Six séances) des 24 Programmes Bien Tempérés par Koharik Gazarossian* (Առաջին շարք (Վեց նուագահանդէս)՝ Գոհարիկ Ղազարոսեանի 24 Բարեփոխեալ Յայտագիրներուն): Վեց մենանուագներուն ձայնակայքերն էին՝ *սօ մեծալար* (Մարտ 3), *սօ փոքրալար* (Մարտ 6), *սօ կիսվեր մեծալար* կամ *ռէ կիսվար մեծալար* (Մարտ 10), *սօ կիսվեր փոքրալար* (Մարտ 13), *ռէ մեծալար* (Մարտ 17) եւ *ռէ փոքրալար* (Մարտ 20): Ընտրուած էին բաւական բարդ ու բազմազան յայտագիրներ: Իւրաքանչիւրը կը բովանդակէր Ղազարոսեանի մէկ գործ մը, որոնք առաջին անգամ ըլլալով անուանուած էին *Album bien tempéré* (Բարեփոխեալ ալպոմ) եւ յաջորդաբար թուագրուած թիւ 1-6[90]: Անոնք են՝ թիւ 1, "Choral" (Հայր մեր) *սօ մեծալար*, թիւ 2, "Paresse (Poème de H. Mark)" (Ծուլութիւն (բանաստեղծութիւն Հ. Մառքի)) *սօ փոքրալար*, թիւ 3, "Pièce" (Ստեղծագործութիւն) *սօ կիսվեր մեծալար*, թիւ 4, "Prélude" (Նախաբան) *սօ կիսվեր փոքրալար*, թիւ 5, "Nocturne" (Գիշերերգ) *ռէ մեծալար* եւ թիւ 6, "Prélude et Fugue" (Նախաբան եւ Ֆիւկ) *ռէ փոքրալար* [«Խորհուրդ խորին»]:

Մենանուագներու այս շարքով Ղազարոսեան դաշնակահարի եւ յօրինողի մտայղացումները կը միանան իրարու: Այս նուագահանդէսները մղիչ ուժ կը հանդիսանան յօրինելու իր շարքը, ինչպէս կը վկայէ նոյն ինքը հեղինակը ըսելով. «Այս ծրագիրս ինձ առիթ ստեղծեց նաեւ ձեռնարկելու 24 կտորներու հեղինակութեան, զորս կ'անուանեմ լ'Ալպօմ պիէն թամփէրէ»[91]:

Ուրիշ հարց՝ թէ ընդհանուր գործադուլին պատճառով, վերջին երկու նուագահանդէսները տեղի չեն ունենար[92]: Բայց չորրորդ եւ հինգերորդ յայտագիրները առիթ կ'ունենայ յետագային քանիցս կատարելու:

Bien tempéré-ն կը փոխադրէ նաեւ Իսթանպուլ: 1952 Փետրուար 6 եւ 12-ին, Քիւչիւք Սահնէին մէջ կը կազմակերպէ երկու մենանուագ՝ յաջորդաբար առաջին (*սօ մեծալար*) եւ երկրորդ (*սօ փոքրալար*) յայտագիրներով, ուր արդէն մնայուն մաս կազմած են այս նպատակով յօրինած ժողովածուի համապատասխան կտորները[93]:

Լայն թափով կը շարունակուին Bien tempéré-ի մենանուագները՝ Փարիզ (22 Մարտ 1952, École Normale de Musique, *ռէ մեծալար* յայտագիր), Ժընեւ (12 Յունիս 1952, Athénée սրահ, *սօ մեծալար* յայտագիր), Նիս (13 Մարտ 1953, L'Artistique սրահ, *ռէ փոքրալար* յայտագիր), Փարիզ (19 Մարտ 1953, Salle Chopin-Pleyel, *ռէ փոքրալար* յայտագիր. 9 Մարտ 1954, Salle Chopin-Pleyel, *մի կիսվար մեծալար* յայտագիր), Ցիւրիխ (29 Մարտ 1954, Kongresshaus Kammermusiksaal սրահ, *մի կիսվար մեծալար* յայտագիր), Ֆրանքֆորթ (25 Նոյեմբեր 1954, Ärztehaus սրահ, *սի փոքրալար* յայտագիր), Փարիզ (7 Դեկտեմբեր 1954, Salle Chopin-Pleyel, *սի փոքրալար* յայտագիր), Իսթանպուլ (2 Ապրիլ 1955, Կալաթասարա Լիսէսի Քոնֆերանս սրահ, *սի փոքրալար* յայտագիր), Պէյրութ (14 Դեկտեմբեր 1959, Ամերիկեան Համալսարանի West Hall սրահ, *սօ մեծալար* յայտագիր), Փարիզ (2 Յունիս 1959, Institut Hongrois, *սօ մեծալար* յայտագիր) եւ Գահիրէ (4 Յունիս 1967, Nile Hall, *սօ մեծալար* յայտագիր)՝ ուր միշտ ընդգրկած է իր յօրինած *Album bien tempéré*-ի համապատասխան ձայնակայքով գործերը[94]: Գահիրէի նուագահանդէսին մէջ, ինչպէս պիտի բացատրեմ ստորեւ, *Album bien tempéré*-ին կու գար փոխարինել նորաստեղծ *Études*-ին թիւ 1-ը՝ *սօ մեծալար*:

Bien tempéré-էն կը շեղուէր միայն յատուկ նպատակներով: Օրինակ, 1954 Նոյեմբեր 30-ին, Տիւսելտորֆի մենանուագը անուանած էր Արեւելեան Դաշնակի Երաժշտութիւն, զոր բնականաբար պիտի կազմէր խառն յայտագիրով[95]: Կամ՝ ամբողջութեամբ իր հեղինակու-

թիւններէ կազմուած մենանուագը՝ 1959 Յունիս 18-ին, Փարիզի Institut Hongrois-ին մէջ[96]:

Հարցադրումի դուռ կը բանայ Պէյրութի Ամերիկեան Համալսարանի 1959 Դեկտեմբեր 14-ի մենանուագը՝ *տօ մեծալար* յայտագիրով: Նախ, այստեղ ամբողջութեամբ կը նուագէ *Album bien tempéré*-ի առաջին վեց կտորները: Ընդունելի է՝ քանի որ անոր առաջինը *տօ մեծալարի* մէջ է: Սակայն կ'ընդգրկէ նաեւ երկու Փրելիւտ՝ «Աղջի, մէրըդ մեռել ա» եւ «Աղջի անունդ Ճուշան», որոնք երկուքն ալ *լա փոքրալարի* մէջ են[97]: Նոր գունաւորո՞ւմ մըն է արդեօք Bien tempéré-ի յղացումին մէջ՝ օգտագործելով զուգահեռ փոքրալարը:

Ընդհանուր առմամբ, Ղազարոսեան կը յաջողի ներկայացնել 1-7-րդ (*տօ մեծալար – մի կիսվար մեծալար*) եւ 24-րդ (*սի փոքրալար*) յայտագիրները, քանզի կեանքի վերջին տարիներուն կը նուագի իր հետաքրքրութիւնը ամբողջական մենանուագներու նկատմամբ, աւելի շատ ժամանակ յատկացնելով յօրինողութեան, նուագակցութեան եւ տարբեր նուագահանդէսներու մէջ իր գործերը ներկայացնելու: Մենանուագներու նուագեցումով կը նուագի նաեւ հետաքրքրութիւնը ամողջացնելու *Album bien tempéré*-ին մնացած քանի մը կտորները: Իր ձեռագիրները ցոյց կու տան, որ նուագաշարէն երեք կտոր՝ թիւ 18 (*սոլ կիսվեր փոքրալար*), թիւ 21 (*սի կիսվար մեծալար*) եւ թիւ 22 (*սի կիսվար փոքրալար*), չեն յօրինուած: Բայց երբեք չի նուագիր իր բուռն ձգտումն ու ներքին համոզումը ձայնակայքերու կիսաձայնային մեծալար-փոքրալար յաջորդականութեան նկատմամբ: Ղազարոսեանի վերջին մենանուագը տեղի կ'ունենայ Գահիրէի մէջ՝ 1967 Յունիս 4-ին: Յայտագիրը *տօ մեծալարն* էր, բայց փոխանակ *Album bien tempéré*-ի "Choral"-ին ան կը բովանդակէր նորաստեղծ *Études*-ին (Վարժութիւն) թիւ 1-ը՝ *տօ մեծալար*: Կարծէք 1966-ին աւարտած *24 Études*-ը՝ որ *Album bien tempéré*-ի նոյն ձայնակայքային յաջորդականութիւնն ունի, կու գար փոխարինել երաժշտահանի կեանքի երբեմնի նպատակը հանդիսացող *Album bien tempéré*-ին (*տե՛ս* ստորեւ՝ *24 Études*-ին բացատրութիւնները): *Études*-ը կը պարփակէ այն բոլորը՝ ինչ կարող էր ընդգրկել *Album bien tempéré*-ն: Կը փոխուի լոկ ձեւը, իսկ խորքը, նպատակը կը մնայ նոյնը: Այսինքն՝ Ղազարոսեանի համար ձայնակայքային այս յարաբերակցութիւնն էր էականն ու խորքայինը՝ ինչ փոյթ թէ ան կեանք կը ստանայ *Album bien tempéré* թէ *Études* խորագիրին տակ:

Բացի իր կեանքի վերջաւորութեան կատարած այս ընդհանուր փոփոխութիւնէն՝ բուն *Album bien tempéré*-ի կազմին մէջ տեղի ունեցած է մէկ գլխաւոր փոփոխութիւն, կապուած թիւ 6, Prélude et Fugue *ռէ փոքրալարին* («Խորհուրդ խորին») հետ: Փարիզի 1951 Մարտ 20-ի, Նիսի 1953 Մարտ 13-ի եւ Փարիզի 1953 Մարտ 19-ի *ռէ փոքրալար* յայտագիրները կը բովանդակեն Prélude et Fugue-ը: 1954 Նոյեմբեր 30-ին, Տիւսելտորֆի Die Brücke կեդրոնին մէջ Ղազարոսեան կու տայ մենանուագ մը խառն յայտագիրով՝ նուիրուած արեւելեան երաժշտութեան, ուր այս գործը կը ներկայացնէ իբրեւ ինքնուրոյն ստեղծագործութիւն[98]: 1959 Յունիս 18-ին, Փարիզի Institut Hongrois-ին մէջ կու տայ ամբողջութեամբ իր գործերէն բաղկացած մենանուագ մը՝ ուր իբրեւ նուագաշար կ'ընտրէ *Album bien tempéré*-ի առաջին վեց թիւերը՝ "Choral" (Հայր մեր), "Paresse" (Ծուլութիւն), "Pièce populaire" (Ժողովրդական ստեղծագործութիւն), "Souvenir" (Յիշատակ), "Midi-soleil" (Կէսօրուան արեւ) եւ "Dansons!" (Պարե՛նք)[99]: Ինչպէս կ'երեւի՝ թիւ 6-ը փոխարինած է ուրիշ գործով մը: Նոյնպէս, 1959 Դեկտեմբեր 14-ին, Պէյրութի Ամերիկեան Համալսարանի West Hall-ին մէջ տուած *տօ մեծալար* մենանուագին կ'ընտրէ միեւնոյն նուագաշարը: Institut Hongrois-ի մենանուագին մէջ կ'ընդգրկէ նաեւ O mystère profond Prélude et Fugue-ը (Խորհուրդ խորին Նախաբան եւ Ֆիւկ)՝ իբրեւ անկախ ստեղծագործութիւն[100]: Այս բոլորը կասկած չեն թողուր՝ թէ Ղազարոսեան 1954-ին զայն անջատած է *Album bien tempéré*-էն: Ձեռագիրները եւս կու գան հաստատել այս երեւոյթը: Կը գտնուի *Album bien tempéré*-ի թիւ 6-ի երկու ձեռագիր, որոնցմէ մէկը կը կրէ 1951 թուական եւ կը բովանդակէ Prélude et Fugue-ը, միւսը՝ աւելի ուշ գրուած անթուակիր ձեռագիր մը, կը պարփակէ "Dansons!"-ը (աւելի մանրամասն *տե՛ս* ստորեւ՝ ձեռագիրներուն բացատրութիւնները):

Թիւ 24՝ *սի փոքրալար* յայտագիրին մէջ համատեղաբար գոյութիւն ունեցած են "Poème varié" (Տարբերակեալ բանաստեղծութիւն) եւ *Huit variations sur un thème de Père Komitas* (Ութ փոփոխակ Կոմիտաս Վարդապետի

եղանակի վրայ)։ 1954 Նոյեմբեր 24 նուագահանդէսին կատարած է առաջինը, Դեկտեմբեր 7-ին՝ երկուքը միասին, իսկ 1955 Ապրիլ 2-ին՝ միայն երկրորդը[101]։ Թուականներու մօտիկութեան պատճառով դժուար է եզրակացութիւններ կատարել, իսկ ձեռագիրները որոշակի օգնութիւն չեն ցուցաբերեր։

Նոյնիսկ *Album bien tempéré*-ի գաղափարի բիւրեղացումէն ու գործադրութենէն ետք, "Choral"-ը (Հայր մեր) շարունակած է իր ինքնուրոյն ուղին։ Օրինակ, երբ 1967-ին Ղազարոսեան կ'այցելէ Գահիրէ, իր հետ ունէր "Choral"-ի ընդօրինակութիւններ՝ իբրեւ ինքնուրոյն գործ։ Այս ընդօրինակութիւններէն մէկը ձօնած է եգիպտահայ անուանի դաշնակահարմանկավարժ Նուարդ Տամատեանին[102]։ Նոյնպէս, 1955 Մայիս 7-ին, Պոլսոյ Փարք Օթէլի սրահին մէջ, Հայկանոյշ Մառքի յոբելինական հանդէսին Ղազարոսեան կը նուագէ *Album bien tempéré*-ի թիւ 2-ը՝ *սօ փոքրալար* "Paresse" (Ծուլութիւն) եւ թիւ 10-ը՝ *մի փոքրալար* "Mon rêve" (Երազս), երկուքն ալ ներշնչուած Հ. Մառքի բանաստեղծութիւններէն[103], զորս կը կրկնէ նոյն նպատակով կազմակերպուած հանդէսին՝ Փարիզի Salle Gaveau-Chopin-ին մէջ, 1956 Դեկտեմբեր 1-ին[104]։

Բացի դաշնակի հիմնական տարբերակէն, Ղազարոսեան յօրինած է նաեւ այլ գործիքային տարբերակներ։ Առաջին վեց կտորները յօրինած է ջութակի եւ դաշնակի[105] ու թաւջութակի եւ դաշնակի[106] համար, պահպանելով նոյն *Album bien tempéré* խորագիրը։ Երկուքն ալ իրականացուած են ըստ դաշնակի *Album bien tempéré*-ի հին տարբերակին, այսինքն՝ թիւ 6-ը «Խորհուրդ խորին» Prélude et Fugue-ն է եւ ոչ թէ "Dansons!"-ը։ Թիւ 17-ը՝ *լա կիսվար մեծալար* "Moto perpetuo" (Յաւերժ շարժում), յօրինած է նաեւ իբրեւ ջութակ-դաշնակի ինքնուրոյն գործ՝ *Moto capriccioso* (Քմայոտ շարժում) խորագիրով (1962)[107]։

"Choral"-ի բնատիպ մեղեդին կը ներկայացնէ «Հայր մեր»-ը։ Զայն՝ *Տէրունական աղօթք* խորագիրով, դաշնակած է մեներգի համար դաշնակի նուագակցութեամբ, չմոռնալով նշել՝ «Եղանակ՝ Կոմիտաս Վարդապետ»[108]։ "Choral"-ը օգտագործած է *24 Études*-ին մէջ, իբրեւ եռմասանի թիւ 12-ի (*ֆա փոքրալար*) միջին մաս[109]։

Նոյնիսկ դաշնակի տարբերակէն մասեր գործածած է դաշնակի այլ գործերու մէջ։ Այսպէս, թիւ 24՝ *սի փոքրալար* "Poème varié" (Տարբերակեալ բանաստեղծութիւն), թիւ 7՝ *մի կիսվար մեծալար* "Portrait de famille (Angèle)" (Ընտանիքի պատկեր (Անժէլ)) եւ թիւ 17՝ *լա կիսվար մեծալար* "Moto perpetuo" (Յաւերժ շարժում) 1956-ին օգտագործած է իբրեւ դաշնակի Սոնաթին յաջորդաբար առաջին, երկրորդ եւ չորրորդ շարժումները (*տե՛ս* վերը՝ Սոնաթին բացատրութիւնները)։

Իսկ բանաստեղծական ներշնչում ունեցող շարժումներէն ոմանք կերտած է նաեւ իբրեւ մեներգներ դաշնակի նուագակցութեամբ։

*Album bien tempéré*-ն բարձր գնահատած է խորիմաց երգչուհի, երաժշտագէտ Մարգարիտ Բաբայեան, որուն կարծիքները հիմնուած են Ղազարոսեանի նուագահանդէսներու ընթացքին կատարուած գործերուն կենդանի ունկնդրութեան վրայ։ Ըստ Բաբայեանին՝ *ռէ մեծալար* "Nocturne"-ը (Գիշերերգ) «ցոյց կու տայ հեղինակին բանաստեղծական հակումները, նրբութիւնը եւ հայրենաբաղձութիւնը»[110]։ *Ռէ փոքրալար* Prélude et Fugue-ին (Նախաբան եւ Ֆիւկ) մէջ Ղազարոսեան «երեւան կը հանէր իր արտակարգ երաժշտական պատրաստութեան ու զարգացման, նորագոյն թեքնիքին հետ, իր խոր հայկական հոգին եւ կը ստեղծէր մի ինքնուրոյն իրեն յատուկ գործ»[111]։ *Մի կիսվար մեծալար* "Portrait de famille (Angèle)" (Ընտանիքի պատկեր (Անժէլ)) «ընտիր, զուարթ գործ մը[ն է]՝ որ կ'ունենայ մեծ յաջողութիւն»[112] եւ ուր «երեւան եկաւ [Ղազարոսեան] երգահանի մեծ տաղանդը»[113]։ «Իսկ ինչ ըսել այն գողտրիկ, ինքնաբուխ իր անձնական երաժշտական քերթուածներու մասին, այն բանաստեղծօրէն հիւսուած «Փօէմ վարիէ»ին, ներշնչուած Խաչբրութեանի բանաստեղծութենէն»[114]։

Նշեցի՝ որ Ղազարոսեան չէ աւարտած ժողովածուն։

Ձեռագիրները կը պահուին Սօնա Պետրոսեանի մօտ։ Քանի մը գործեր հասած են երկուական ձեռագիրներով։

Ընդհանուր առմամբ, ձեռագիրները կը բաժնուին երկու մասի։

Առաջինը կը համախմբէ փոքր չափի միանման թերթեր։ Իւրաքանչիւր գործ գրուած է առանձին թերթի վրայ։ Անոնց մեծամասնութիւնը կը կրէ 1951 թուականը, ուրիշներ՝ 1941, եւ քանի մը հատ ալ անթուակիր են։ Բայց նկատի ունենալով՝ որ բոլորն ալ գրուած են միա-

նման ձայնաթերթերու վրայ, զանոնք պէտք է դիտել ժամանակագրական մէկ ամբողջականութեան մէջ: Բաց աստի, անոնց թիւ 6-ը տակաւին կը բովանդակէ «Խորհուրդ խորին» "Prélude et Fugue"-ը, որ, ինչպէս տեսանք, ամենաուշը 1954-էն սկսեալ դուրս մնացած էր *Album bien tempéré*-էն:

Ձեռագիրներու երկրորդ խումբը կը պարփակէ մեծ չափի թերթեր: Ի տարբերութիւն փոքր չափի ձեռագիրներէն, մեծ չափի թերթերը միանման չեն, չեն կրնար միասին ամբողջականութիւն մը կազմել: Բայց անոնք վստահաբար գրուած են փոքրերէն ետք: Առաջին վեց թիւերը համախմբող անթուակիր ձեռագրախումբին թիւ 6-ը արդէն "Dansons!"-ն է: Ուրիշ երեք առանձին ձեռագիրներ կը կրեն 1951, 1953, 1954 թուականները, իսկ միւսները անթուակիր են:

Ահաւասիկ ձեռագիրներուն մանրամասնութիւնները: Նշեմ՝ որ բոլորն ալ ինքնագիր են:

Փոքր չափի (19.7x27.6 սմ.) ձեռագիրներ.

Ա.-Խորագիր՝ 3.-Pièce en Do # majeur [3.-Ստեղծագործութիւն տօ կիսվեր մեծալարի մէջ]: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրչատեսակ՝ սեւ մելան, յաւելագրութիւններ մատիտով եւ կարմիր մելանով:

Բ.-Խորագիր՝ 4.-Prélude en do # mineur [4.-Նախաբան տօ կիսվեր փոքրալարի մէջ]: Թուական՝ Մարտ 1951: Թերթ՝ 2: Գրչատեսակ՝ սեւ մելան:

Գ.-Խորագիր՝ 5.-Nocturne [5.-Գիշերերգ]: Թուական՝ Մարտ 1951: Թերթ՝ 2: Գրչատեսակ՝ սեւ մելան:

Դ.-Խորագիր՝ 6.-Prélude et Fugue [6.-Նախաբան եւ Ֆիւկ]: Թուական՝ Մարտ 1951: Թերթ՝ 4: Գրչատեսակ՝ սեւ մելան:

Ե.-Խորագիր՝ 7.-Portrait de famille (Angèle) [7.-Ընտանիքի պատկեր (Անժէլ)]: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրչատեսակ՝ կապոյտ մելան, յաւելագրութիւններ մատիտով:

Զ.-Խորագիր՝ 10.-Mon rêve (Poème de Mme Mark) [10.-Երազս (Բանաստեղծութիւն տիկ. Մառքի]: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրչատեսակ՝ կապոյտ չոր մելան: Ձայնանիշերուն տակ գրուած են Մառքի հայերէն բանաստեղծութեան բառերը:

Է.-Խորագիր՝ 11.-Portrait de famille (Chaké) [11.-Ընտանիքի պատկեր (Շաքէ)]: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրչատեսակ՝ սեւ մելան:

Ը.-Խորագիր՝ 12.-Belle nuit [12.-Աղուոր գիշեր)]: Թուական՝ Իսթանպուլ, 13 Յուլիս 1951: Թերթ՝ 2: Գրչատեսակ՝ կապոյտ չոր մելան, սրբագրութիւններ կարմիր մելանով:

Թ.-Խորագիր՝ 15.-Gemma dodo! [15.-Ճեմմա կը քնանայ]: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 1: Գրչատեսակ՝ սեւ մելան, սրբագրութիւններ մատիտով եւ կարմիր մելանով:

Ժ.-Խորագիր՝ 16.-Prélude [16.-Նախաբան]: Թուական՝ Իսթանպուլ, 26 Մարտ 1941: Թերթ՝ 2: Գրչատեսակ՝ կարմիր մելան: Առաջին էջին վերի կողմը (խորագիրին վրայ) Ղազարոսեան թրքերէն լեզուով գրած է՝ թէ երաժշտութիւնը վերցուցած է Ռիզա էֆէնտիի Փեշրեւի «Ժողովածու»-էն, եւ թէ զայն նախատեսած է նաեւ լարային քառանուագի կազմի համար: Աւելցնեմ՝ որ ան օգտագործուած է իբրեւ իր Լարային Քառանուագի երրորդ շարժումը[115]:

ԺԱ.-Խորագիր՝ 16.-Pechrev [16.-Փեշրեւ]: Թուական՝ Իսթանպուլ, 26 Մարտ 1941: Թերթ՝ 2: Գրչատեսակ՝ կարմիր մելան: Ժ.-ն՝ ԺԱ.-ին համեմատութեամբ աւելի մանրամասնուած է երանգանիշերու կապակցութեամբ, թէեւ երաժշտականապէս երկուքն ալ միանման են:

Ա.-Դ. ձեռագիրներուն իւրաքանչիւրը կը կրէ կնիք՝ հետեւեալ գրութեամբ. "SOCIÉTÉ DES AUTEURS, COMPOSITEURS & ÉDITEURS DE MUSIQUE, 23 AVR 1951 - 658,337, 10, Rue Chaptal, PARIS": Այսինքն՝ հեղինակի իրաւունքը արձանագրուած է Փարիզի Երաժշտութեան Գրողներու, Երաժշտահաններու եւ Հրատարակիչներու Ընկերութեան քով, 23 Ապրիլ 1951-ին:

Մեծ չափի ձեռագիրներն են.

ԺԲ.-Խորագիր՝ Album bien tempéré: Première série [Բարեփոխեալ ալպոմ. առաջին շարք]: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 7: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան, նշումներ կարմիր մելանով: Մեծութիւն՝ 27x34.8 սմ.:

Բովանդակութիւն.

I. Choral [Շարական]

II. Paresse [Ծուլութիւն]

III. Pièce populaire [Ժողովրդական ստեղծագործութիւն]

IV. Prélude (Souvenirs) [Նախաբան (Յիշատակներ)]

V. Nocturne (Midi-Nocturne) [Գիշերերգ (Կէսօրուայ Գիշերերգ)]

VI. Dansons! [Պարե՛նք]

ԺԳ.-Խորագիր՝ Portrait de famille (Angèle): Album bien tempéré [Ընտանիքի պատկեր

(Անժէլ). Բարեփոխեալ ալպոմ]: Հեղինակ՝ K. Gazarossian: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ կապոյտ մելան, յաւելագրութիւններ մատիտով եւ կարմիր մատիտով: Մեծութիւն՝ 27.3x35.5 սմ.:

Հատածներ 48–60–ը գոյութիւն չէն ունեցած ԺԳ.–ի նախնական չարադրութեան մէջ: Անոնք աւելցուած են ստեղծագործութեան աւարտէն ետք, վերջին էջին վարը մնացած հնգագիծերուն վրայ եւ նշուած անոնց տեղը բուն գործին մէջ: Հատածներ 53–60–ը կը կրեն մեծ քանակութեամբ վերադիր սրբագրութիւններ, գրեթէ անկարելի ըլլալով վերծանել ամբողջական չարադրութիւնը: Հետեւաբար, խուսափելու համար անձնական միջամտութիւններէ, հատածներ 53–59–ը յարմար դատեցի նոյնութեամբ ընդօրինակել Սոնաթի երկրորդ չարժումի համապատասխան հատածներէն, քանի որ՝ ինչպէս վերը նշեցի, այս չարժումը հիմնըւած է “Portrait de famille”–ին (Ընտանիքի պատկեր) վրայ:

ԺԴ.–Խորագիր՝ 10.-Mon rêve: Poème de Mme Mark [10.–Երազս. Բանաստեղծութիւն տիկ. Մառքի]: Հեղինակ՝ նշուած չէ: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ կապոյտ չոր մելան, սրբագրութիւններ մատիտով: Մեծութիւն՝ 23.5x31.5 սմ.:

ԺԵ.–Խորագիր՝ Album bien tempéré: 12.-Belle nuit (poème de Mme Anaïs) [Բարեփոխեալ ալպոմ. 12.–Աղուոր գիշեր (բանաստեղծութիւն տիկ. Անայիսի)]: Հեղինակ՝ նշուած չէ: Թուական՝ Իսթանպուլ, 13 Յուլիս 1951: Թերթ՝ 2: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ Ա. թերթ՝ սեւ մելան, սրբագրութիւններ մատիտով, Բ. թերթ՝ մատիտ: Մեծութիւն՝ 23.9x31.5 սմ.:

ԺԶ.–Խորագիր՝ 13.-Mensuration (poème de Armand Harpoutian): Album bien tempéré [13.–Չափագրութիւն (բանաստեղծութիւն Արման Խարբութեանի). Բարեփոխեալ ալպոմ]: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Թուական՝ Փրինքիփօ, 15 Յունիս 1953: Թերթ՝ 2: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան, սրբագրութիւններ կարմիր մելանով: Մեծութիւն՝ 27.5x35.5 սմ.:

ԺԷ.–Խորագիր՝ 14.-Solitude [14.–Առանձնութիւն]: Հեղինակ՝ K. Gazarossian: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան: Մեծութիւն՝ 27x34.7 սմ.: Տիտղոսաթերթին վրայ գրուած է Թէօ Մարթէնի *Solitude* (Առանձնութիւն) ֆրանսերէն բանաստեղծութիւնն ամբողջութեամբ: Ձայնանիշերուն տակ եւս դրուած են բանաստեղծութեան բառերը:

ԺԸ.–Խորագիր՝ 14.-Album bien tempéré: Solitude, inspiré du poème, dédié au Théo-Martin [14.–Բարեփոխեալ ալպոմ. Առանձնութիւն, ներշնչուած բանաստեղծութենէն, նուիրուած Թէօ Մարթէնին]: Հեղինակ՝ K. Gazarossian: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ տիտղոսաթերթ՝ սեւ մելան, ձայնանիշեր՝ կապոյտ մելան: Մեծութիւն՝ 26.4x34 սմ.: Տիտղոսաթերթին վրայ գրուած է Թէօ Մարթէնի *Solitude* (Առանձնութիւն) ֆրանսերէն բանաստեղծութիւնն ամբողջութեամբ: Ի տարբերութիւն ԺԷ.–էն՝ ձայնանիշերուն տակ բառեր չկան: ԺԷ.–ին եւ ԺԸ.–ին միջեւ կան փոքր տարբերութիւններ: Հրատարակութեանս համար հիմնուեցայ ԺԸ.–ին վրայ՝ որուն գրութիւնը աւելի մաքուր է եւ երանգանիշերու առումով աւելի մանրամասնեալ:

ԺԹ.–Խորագիր՝ 17.-Moto perpetuo [17.–Յաւերժ չարժում]: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Թուական՝ Իսթանպուլ, 27 Մայիս 1955: Թերթ՝ 5: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ կապոյտ չոր մելան, սրբագրութիւններ մատիտով: Մեծութիւն՝ 23.4x31.5 սմ.: Հատածներ 34–35, 39–40, 43–44, 56–58, 84, 159–161 խճողուած են սրբագրութիւններով, որով անկարելի է վերծանել զանոնք: Նկատի առնելով՝ որ նոյն ստեղծագործութիւնը հիմք ծառայած է դաշնակի Սոնաթին (*տե՛ս* վերը՝ Սոնաթին բացատրութիւնները), յիշեալ հատածները ընդօրինակեցի Սոնաթի ձեռագիրէն: Ընդհանուր հետքերէն դժուար չէ նկատել՝ թէ ԺԹ.–ի բոլոր սրբագրութիւնները ուղղուած են դէպի Սոնաթի ձեռագիրը, այսինքն՝ վերջինին մէջ նկատի առնուած են ԺԹ.–ին սրբագրութիւնները:

Ի.–Խորագիր՝ 23.-4ème série: (Album bien tempéré): Courant d’air (poème d’Armand Harpoutian) [23.–4–րդ չարք. (Բարեփոխեալ ալպոմ). Օդի հոսանք (բանաստեղծութիւն Արման Խարբութեանի)]: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ կապոյտ մելան: Մեծութիւն՝ 26.4x33.9 սմ.: Տիտղոսաթերթին վրայ գրուած է ֆրանսերէն ամբողջական բանաստեղծութիւնը: Երկրորդ թերթին վարի կողմը անյայտ պատճառներով մկրատուած է, որ պէտք է պարունակէր ստեղծագոր-

ծութեան հատածներ 20-27-ը եւ վերջաւորութիւնը: Բայց այս գործը կը հանդիսանայ թիւ 24-ին՝ “Poème varié”-ին կամ դաշնակի Սոնաթի առաջին շարժումին միջին մասը: Հետեւաբար, պակսող հատածները կարելի եղաւ վերականգնել ըստ յիշեալ գործերու ձեռագիրներուն: Վերջնաւարտը (հատած 54) թողեցի ինչպէս որ գրուած է միւս ձեռագիրներուն մէջ, թէեւ կրնայ ըլլալ Ղազարոսեան յօրինած ըլլայ աւելի ցայտուն վերջնաւարտ մը:

**ԻԱ.-Խորագիր՝** 24.- Album bien tempéré: Poème varié (Armand Harpoutian) [24.-Բարեփոխեալ ալպոմ. Տարբերակուած բանաստեղծութիւն (Արման Խարբութեան)]: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան: Մեծութիւն՝ 27.4x35.5 սմ.: Առաջին երկու էջերուն մէջ, ձայնանիշերուն վրայ մատիտով աւելցուած են Խարբութեանի հայերէն բանաստեղծութեան բառերը: Կը կրէ կնիք՝ հետեւեալ գրութեամբ. “SOCIÉTÉ DES AUTEURS, COMPOSITEURS & ÉDITEURS DE MUSIQUE, 30 NOV 1954 - 692,991, 10, Rue Chaptal, PARIS”: Այսինքն՝ հեղինակի իրաւունքը արձանագրուած է Փարիզի Երաժշտութեան Գրողներու, Երաժշտահաններու եւ Հրատարակիչներու Ընկերութեան քով, 30 Նոյեմբեր 1954-ին:

**ԻԲ.-Խորագիր՝** 24.- Album bien tempéré: Poème varié (d’Armand Harpoutian) [24.-Բարեփոխեալ ալպոմ. Տարբերակուած բանաստեղծութիւն (Արման Խարբութեան)]: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 2: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան, յաւելագրութիւններ մատիտով, կարմիր մատիտով եւ կապոյտ չոր մելանով: Մեծութիւն՝ 27.5x35.5 սմ.: Ի տարբերութիւն ԻԱ.-էն, այստեղ բանաստեղծութեան բառերը չկան: ԻԱ. եւ ԻԲ. ձեռագիրները նման են իրարու: Սակայն ԻԲ.-ին մէջ՝ հիմնական նոթագրութենէն ետք, աւելցուած են մեծ քանակութեամբ կատարողական նշումներ (***cresc.***, ***expressif***, ***en dehors***, եւլն.) եւ մատնաշարեր (fingering)՝ որոնք չկան ԻԱ.-ին մէջ եւ որոնք խիստ հետաքրքրական են: Կատարողական նշումներուն այս առատութիւնը՝ յաւելագրուած հիմնական նոթագրութենէն տարբեր գրչատեսակով, կը յուշէ՝ թէ ձեռագիրը Ղազարոսեան գործածած է իր կատարումներուն համար: Հրատարակութեանս հիմքը ԻԲ.-ն է: Ձեռագրական անհրաժեշտ լրացումներ կատարեցի հիմնուելով ԻԱ.-ին վրայ:

Երկու ձեռագրախումբերուն (Ա.-ԺԱ. եւ ԺԲ.-ԻԲ.) միջեւ կան մեծ ու փոքր տարբերութիւններ: Հրատարակութեանս համար հիմնըւեցայ մեծ չափի (ԺԲ.-ԻԲ.), այսինքն՝ համեմատաբար ուշ գրուած ձեռագիրներուն վրայ:

Երկու խումբերուն միջեւ թուականի միակ նմանութիւնը թիւ 12 Belle nuit-ի (Աղուոր գիշեր) երկու ձեռագիրներն են՝ Ը. եւ ԺԵ., որոնք բաւական նման են իրարու, թէեւ ԺԵ.-ը շատ աւելի մաքրագիր է ու յղկուած ձայնակապերու տեսանկիւնէն: Աւելին. Ը.-ին վրայ կատարուած վերադիր սրբագրութիւնները իրականացուած են ԺԵ.-ին մէջ: Ուրեմն, հակառակ թուականներու նմանութեան, ԺԵ.-ը նոյնպէս աւելի ուշ գրուած է քան Ը.-ը:

Իսկ թիւ 11՝ Portrait de famille “Chaké”, թիւ 15՝ “Gemma dodo!” եւ թիւ 16՝ “Prélude” մեզի հասած են միայն հին տարբերակով (փոքր չափի ձեռագիր):

Փոքր չափի իւրաքանչիւր ձեռագիրի տիտղոսաթերթին վրայ աւելի կամ նուազ ամբողջականութեամբ դրուած են *Album bien tempéré*-ի մնացած շարժումներուն խորագիրները: Այս խորագիրներէն կարելի է ամբողջացընել քանի մը շաժրում՝ որոնք նախապէս մաս կազմած են ուրիշ նուագաշարի կամ ժողովածուի մը եւ Ղազարոսեան պարզապէս զանոնք կրկին չէ ընդօրինակած *Album bien tempéré*-ին համար: Այսպէս, Զ. ձեռագիրի տիտղոսաթերթին ցուցակը յստակօրէն կը նշէ՝ որ թիւ 8-ը (*մի կիսվար փոքրալար*) դաշնակի Suite-ի (Նուագաշար) “Prélude”-ն (Նախաբան) է, թիւ 9-ը (*մի մեծալար*)՝ *4 Préludes*-ի (4 Նախանըւագ) «Կալերի ճամբէն» է, թիւ 19-ը (*լա մեծալար*)՝ *Album bien tempéré*-ի առաջին գործն է, այսինքն՝ թիւ 1-ը՝ փոխադրուած *լա մեծալար*, թիւ 20-ը (*լա փոքրալար*)՝ “Marche funèbre” (Սգոյ Քայլերգ) է, որմէ դժուար չէ եզրակացնել՝ թէ ան *4 Préludes*-ի «Աղջի, մէրըդ մեռել ա»-ն է՝ զոր կարգ մը տարբերակներու մէջ ֆրանսերէն անուանած է Սգոյ Քայլերգ:

Զ. ձեռագիրին տիտղոսաթերթը կը վկայէ՝ թէ թիւ 21-ը պէտք է եղած ըլլայ “Prélude” (Նախաբան), որուն ձեռագիրը, սակայն գոյութիւն չունի: Մինչդեռ թիւ 18 եւ 22-ին համար նշուած են միայն ձայնակայքերը՝ *սոլ կիսվեր փոքրալար* եւ *սի կիսվար փոքրալար*, առանց յիշատակուելու անոնց խորագիրները: Այս տեղեկութեան աւելցնելով՝ որ թիւ 18 եւ 22-ին

ձեռագիրները չկան, կարելի է եզրակացնել՝ թէ անոնք պարզապէս չեն յօրինուած: Կը թուի՝ թէ 21–ը եւս յօրինուած չէ:

Նոյն Զ. անթուակիր ձեռագիրի ցուցակէն կը տեղեկանանք՝ որ թիւ 24–ը եղած է Կոմիտաս Վարդապետի եղանակով յօրինած *Huit variations*–ը (Ութ փոփոխակ): Բայց ԻԱ. ձեռագիրը՝ կնքուած 1954, եւ ԻԲ. անթուակիր ձեռագիրը կը բովանդակեն “Poème varié”, իսկ 1954–1955–ի վերոյիշեալ նուագահանդէսները համատեղաբար կը բովանդակեն երկուքը: Նկատի ունենալով՝ որ *Huit variations*–ը գոյութիւն ունեցած է նաեւ իբրեւ անկախ ստեղծագործութիւն՝ եւ իբրեւ այդ տեղ գտած ներկայ հրատարակութեան մէջ, թիւ 24–ը ընդունեցի՝ “Poème varié”–ն:

Ը. ձեռագիրի տիտղոսաթերթին մէջ, թիւ 6 “Prélude et Fugue”–ին քով, ուրիշ գրիչով մը աւելցուած է՝ “Dansons!”, որ անգամ մը եւս կը փաստէ ժողովածուի կազմին մէջ տեղի ունեցած յետագայ փոփոխութիւնը:

Հրատարակութեանս այն գործերը որոնք չեն կրեր ընթացքի ցուցիչ (tempo)՝ կը նշանակէ, որ անոնց ձեռագիրները եւս այս առումով պակասաւոր եղած են:

Ուրեմն, *Album bien tempéré*–ի վերջնական կազմը կ’ըլլայ հետեւեալը.

1.-Տօ մեծալար. “Choral” [Շարական կամ Հայր մեր]: Ինչպէս նշեցի՝ «Հայր մեր»–ի եղանակն է, ըստ Կոմիտաս Վարդապետի ձայնագրութեան:

2.-Տօ փոքրալար. “Paresse” [Ծուլութիւն]: Ներշնչուած է Հայկանոյշ Մառքի *Ծուլութիւն* բանաստեղծութենէն: Թէեւ ձեռագիրներուն մէջ ասոր մասին յիշատակութիւն չկայ, բայց բոլոր տպագրուած յայտագիրներուն մէջ չեշտուած է այս հանգամանքը:

Ահաւասիկ բանաստեղծութիւնը՝ ըստ *Հայկանոյշ Մառք. կեանքն ու գործը* հատորին (Կ. Պոլիս, 1954): Բանաստեղծուհին զայն խորագրած է *Օտարացում*.

Չխլրտի ոչի՞նչ սրահին մէջ: Եւ ծաղկամանները նիրհեն յոգնած վարդերով: Դաշնամուրին լարերը չտան ո՛չ մէկ երազ. ու չօրօրուի՞ ոչ մէկ իր: Հովը կենայ, եւ, հովբեկները իյնան ուղիղ ծալքերով: Ժամացոյցին թիք թաքն ալ սառի՞:

Չխլրտի ոչի՞նչ սրահին մէջ: Մեղմ բոյրերը մահանան: Ժամանակը չսահի՞, եւ աչքերը չնայի՞ն: Չխլրտի՞ ոչ մէկ իր: Եւ մրափը ծածանի, դանդա՞ղ, սրտի մը վրայ:

3.-Տօ կիսվեր մեծալար. “Pièce populaire” [Ժողովրդական ստեղծագործութիւն]: Հիմնանիւթը Կոմիտաս Վարդապետի գրառած *Սարեբը կրակ եմ արել* գեղջկական պարերգի տարբերակներէն մէկն է՝ զոր Ղազարոսեան դաշնակած է մեներգի եւ դաշնակի համար[116]:

4.-Տօ կիսվեր փոքրալար. “Prélude (Souvenirs)” [Նախաբան (Յիշատակներ)]:

5.-Ռէ մեծալար. “Nocturne (Midi-Nocturne) ” [Գիշերերգ (Կէսօրուայ Գիշերերգ)]:

6.-Ռէ փոքրալար. “Dansons! ” [Պարե՛նք]: Ան փոխարինած է նախապէս գոյութիւն ունեցող «Խորհուրդ խորին» Prélude et Fugue–ին:

7.-Մի կիսվար մեծալար. “Portrait de famille “Angèle”” [Ընտանիքի պատկեր «Անժէլ»]: Անժէլը Ղազարոսեանի եղբօր՝ Սարգիսին կինն է:

8.-Մի կիսվար փոքրալար. “Prélude” [Նախաբան]:

9.-Մի մեծալար. “À travers les champs” [Կալերի ճամբէն], Կոմիտաս Վարդապետի գրառած սիրային–երգիծական գեղջկական երգին հիմնանիւթն է[117]:

10.-Մի փոքրալար. “Mon rêve” [Երազս]: Ներշնչուած է Հայկանոյշ Մառքի *Երազս* բանաստեղծութենէն:

Ահաւասիկ բանաստեղծութիւնը՝ ըստ *Հայկանոյշ Մառք. կեանքն ու գործը* հատորին (Կ. Պոլիս, 1954).

Երա՞զս, երբեմն կը տանին քեզ ինձմէ հեռու, տափաստանի մը մշուշին մէջ, սարաւանդի մը արեւին տակ, կամ այլուր:

Կը յածիս ջուրի եզերքներուն վրայ, հրուանդաններու ծայրը, շամբերու ստուերներով վերջացած:

Երա՞զս, ի՛նչքան աղուոր ես ջուրի եզերքներուն վրայ, հրուանդաններու ծայրը, շամբերու ստուերներով վերջացած:

Բայց եւ, Երա՞զս, դուն այն ատեն ի՛մս չես...

11.-Ֆա մեծալար. “Portrait de famille “Chaké”” [Ընտանիքի պատկեր «Շաքէ»]: Շաքէն Ղազարոսեանի եղբօր՝ Խաչիկին կինն է:

12.-Ֆա փոքրալար. “Belle nuit” [Աղուոր գիշեր]: Ներշնչուած է Անայիսի բանաստեղծութենէն:

Ահաւասիկ բանաստեղծութիւնը (ընդօրինակած եմ մեներգ–դաշնակի ձեռագիր տարբերա-

կի ձայնանիշերուն տակ դրուած բառերէն. տողաբաժանումները կատարուած են իմ կողմէս).

Աղուոր գիշեր
Լուսին գիշեր
Լէյլակներու բոյրը ծոցիդ
Հոգիս քեզ շատ է կարօտեր:

Այծտերեւները համբոյրիդ տակ
Լարերու կը դողային
Նուագ մըն էր կարկաչն յստակ
Մամռապատած աւազանին:
Առիւծներու բերնէն բղխող
Արդեօք ան ալ ցամքեցուցին

Ըսէ գիշեր
Աղուոր գիշեր
Թէ կ՛որոնես երբեմն հոգիս
Ծառերուդ մօտ տարուբեր:

Բիւրեղ շիթեր կը ծորեն հոն
Ծաղուած վարդին ծոցն հովանի
Զոր խանճած է տաք երեկոն
Տար զիս պարտէզիս մէջ
Արցունքս ցօղդ թող ըլլայ:

Աղուոր գիշեր
Անգութ գիշեր
Հոն կան դահիճներ պարաններ
Ա՜խ կուրցուր աչերս:

13.-Սոլ կիսվար մեծալար. “Mensuration” [Չափագրութիւն]: Ներշնչուած է Արման Խարբութեանի բանաստեղծութենէն: Բանաստեղծութիւնը չկրցայ գտնել Ղազարոսեանի ձեռագիրներուն մէջ:

14.-Ֆա կիսվեր փոքրալար. “Solitude” [Առանձնութիւն]: Ներշնչուած է Թէօ Մարթինի բանաստեղծութենէն:

Ահաւասիկ բանաստեղծութիւնը (ըստ ԺԷ. եւ ԺԸ. ձեռագիրներուն).

J’ai retrouvé des vers faits quand j’avais quinze ans,
De grands vers douloureux jaillis comme des plaintes,
Alors quand j’ignorais le mensonge et ses feintes,
Et que mon cœur à nu s’offrait comme un présent,
Je suis plus triste encore car, en les relisant,
D’un autrefois cruel j’ai subi les empreintes
J’ai ranimé l’émoi de ces heures éteintes,
Que je pouvais chanter en les éternisant.
Et j’ai compris combien d’amertume et d’outrage
Avait mis dans mon cœur le féroce courage
De conserver en lui ses râles, ses sanglots,
Car lorsqu’il défaillit sous des chagrins nouveaux,
Comme un moine cloîtré dans sa cellule austère
Il apprit la grandeur de souffrir... et se taire!

15.-Սոլ մեծալար. “Gemma dodo!” [Ճեմմա կը քնանայ]: Ճեմման՝ Ղազարոսեանի եղբօր Խաչիկին կրտսեր դուստրն է:

16.-Սոլ փոքրալար. “Prélude: Pechrev” [Նախաբան. Փեշրեւ]:

17.-Լա կիսվար մեծալար. “Moto perpetuo” [Յաւերժ շարժում]:

18.-Սոլ կիսվեր փոքրալար. չէ յօրինուած:

19.-Լա մեծալար. Թիւ 1՝ “Choral”-ն է, փոխադրուած *լա մեծալարի* մէջ:

20.-Լա փոքրալար. “Marche funèbre” [Սգոյ քայլերգ]: Հիմնանիւթը Կոմիտաս Վարդապետի գրառած *Աղջի, մէրըդ մեռել ա* գեղջկական երգն է՝ զոր Ղազարոսեան դաշնակած է մեներգի եւ դաշնակի համար[118]:

21.-Սի կիսվար մեծալար. նախատեսուած է իբրեւ “Prélude” (Նախաբան), բայց ձեռագիրը չէ յայտնաբերուած կամ պարզապէս գործը չէ յօրինուած:

22.-Սի կիսվար փոքրալար. չէ յօրինուած:

23.-Սի մեծալար. “Courant d’air” [Օդի հոսանք]: Ներշնչուած է Արման Խարբութեանի բանաստեղծութենէն:

Ահաւասիկ բանաստեղծութիւնը (ըստ Ի. ձեռագրին).

J’ouvrais la fenêtre de mon cœur
J’ai des frissons à y penser
Car depuis je suis malade
Malade d’y penser
Il y a un courant d’air
Car la porte est ouverte,
Et l’air froid glace mon cœur
Mon cœur enrhumé
De toi!

24.-Սի փոքրալար. “Poème varié” [Տարբերակուած բանաստեղծութիւն]: Ներշնչուած է Արման Խարբութեանի բանաստեղծութենէն: Ան գոյութիւն ունեցած է համատեղաբար *Huit variations sur un thème de Père Komitas* (Ութ փոփոխակ Կոմիտաս Վարդապետի եղանակին վրայ) գործին հետ: “Poème varié”-ին բանաստեղծութիւնը անկարելի է վերծանել խճողուած ձեռագիրներէն:

## ՆԱԽԱԲԱՆՆԵՐ
## PRÉLUDES

Ոչ մէկ առնչութիւն ունին չորս հայկական գեղջկական եղանակներու վրայ յօրինած վերոբերեալ *Préludes*-ին հետ:

*24 Études*-ի յաջողութենէն ետք (*տե՛ս* ստորեւ՝ Այլ ստեղծագործութիւններ), 1966-ին մամուլը կը յայտարարէ՝ թէ Ղազարոսեան սկսած է աշխատիլ *24 Préludes*-ի (24 Նախաբաններ) վրայ: *Կամար* ամսաթերթը նոյնիսկ կը հրատարակէ թիւ 1-ը[119]: Հրատարակուածը կը համապատասխանէ տրամադրութեանս տակ գտնուող ձեռագիրին: 1967 Յունիսին, ան Գահիրէի մէջ կը տեղեկացնէր՝ թէ յօրինած է Փրելիւտներէն 9 հատ[120]:

Դժբախտաբար, երաժշտահանին վաղահաս մահը կ'ընդհատէ այս աշխատանքը: Մահուան առիթով *Բուլիս* կը տեղեկացնէ՝ թէ ան յաջողեցաւ գրել միայն 11 Փրելիւտ[121]: Տեղեկութիւնը կը համապատասխանէ *Préludes*-ի ձեռագիրներուն, որոնք 11 հատ են եւ որոնց վերջինին վրայ հեղինակը նշած է թուականն ու վայրը՝ 30 Սեպտեմբեր 1967, Իսթանպուլ:

*Préludes*-ին համար Ղազարոսեան ընդունած է ձայնակայքային տոմինանթի յաջորդականութեան սկզբունքը՝ *տօ մեծալար-լա փոքրալար, սոլ մեծալար-մի փոքրալար, ռէ մեծալար-սի փոքրալար,* եւն.:

Ձեռագիրները կը պահուին Երեւանի Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Գ. Ղազարոսեանի դիւանին մէջ, թիւ 6.

Ա.-Խորագիր՝ ընդհանուր խորագիր չկայ, այլ իւրաքանչիւր գործ յաջորդաբար խորագրուած է Prélude No. 1 – Prélude No. 11 [Նախաբան թիւ 1 – Նախաբան թիւ 11]: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Թուական՝ Prélude No. 1՝ 1966, Prélude No. 2՝ նշուած չէ, Prélude No. 3՝ 1967, Prélude No. 4՝ 1967, Prélude No. 5՝ 1967, Prélude No. 6՝ 1967, Prélude No. 7՝ 1967, Prélude No. 8՝ 1967, Prélude No. 9՝ նշուած չէ, Prélude No. 10՝ 13 Սեպտեմբեր 1967, Prélude No. 11՝ Իսթանպուլ, 30 Սեպտեմբեր 1967: Թերթ՝ 6: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան, քանի բառեր՝ մատիտով: Մեծութիւն՝ 24x31.8 սմ.:

Երեւանի Ղազարոսեանի դիւանի նոյն թղթածրարին մէջ (թիւ 6) կը պահուին նաեւ հետեւեալ երկու առանձին ձեռագիրները.

Բ.-Խորագիր՝ Prélude No. 4: inspiré du poème de Zahrad "Woman picking over rice" [Նախաբան թիւ 4. ներշնչուած Զահրատի բանաստեղծութենէն՝ *Ռսպ ստկող կինը*]: Հեղինակ՝ Koharik Gazarossian: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 1: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան, բանաստեղծութեան բառեր՝ կարմիր չոր մելանով եւ մատիտով: Մեծութիւն՝ 24x41.6 սմ.: Ձայնանիշերուն տակ գրուած են Զահրատի բանաստեղծութեան անգլերէն բառերը:

Գ.-Խորագիր՝ Présence (Prélude No. 10) [Ներկայութիւն (Նախաբան թիւ 10)]: Հեղինակ՝ նշուած չէ: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 1: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ չոր մելան: Մեծութիւն՝ 21.1x27.2 սմ.: Ձայնանիշերուն տակ գրուած են բանաստեղծութեան ֆրանսերէն բառերը:

Սօնա Պետրոսեանին մօտ կը պահուին երկու այլ ձեռագիրներ.

Դ.-Խորագիր՝ Prélude No. 5 [Նախաբան թիւ 5]. Ամէն նոր օր (Արմենուհի Թէրզեան): Հեղինակ՝ Koharik Gazarossian: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 1: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան: Մեծութիւն՝ 24.6x31.7 սմ.: Ձայնանիշերուն վրայ գրուած են բանաստեղծութեան հայերէն բառերը:

Ե.-Խորագիր՝ Prélude No. 7 [Նախաբան թիւ 7]. Հանք (Զարեհ Խրախունի): Հեղինակ՝ Koharik Gazarossian: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 1: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան: Մեծութիւն՝ 24.1x31.8 սմ.: Ձայնանիշերուն վրայ գրուած են բանաստեղծութեան հայերէն բառերը:

Բ.-Ե. ձեռագիրներուն երաժշտութիւնը նոյնն է ինչ Ա.-ը: Բ., Դ. եւ Ե. ձեռագիրներուն բանաստեղծական ներշնչումի աղբիւրը կամ բանաստեղծութիւնները չեն արտացոլուած Ա.-ին մէջ: Միայն Գ.-ին բանաստեղծութիւնը՝ *Présence* [Ներկայութիւն], կը գտնուի Ա.-ին մէջ, որուն բառերը երաժշտահանը աւելցուցած է բուն նոթագրութենէն ետք, տարբեր գրչատեսակով: Ա.-ին մէջ երկրորդ բանաստեղծական ներշնչումով յօրինումը թիւ 11-ն է՝ ըստ Միզուի *Nos mains* [Մեր ձեռքերը] բանաստեղծութեան, որուն ֆրանսերէն բառերը տեղադրած է ձայնանիշերուն տակ:

Հրատարակութեանս հիմքը Ա. ձեռագիրն է: Թիւ 1 եւ 3-ը գրած է 2/4 ամանակով, գրեթէ

բոլոր ձայնանիշերը դարձնելով թրիոլէներ եւ սեքսթոլէներ: Թիւ 3-ին մէջ, 2/4-ին քովը յետագային աւելցուցած է 6/8 ամանակի նշումը, որ ցոյց կու տայ երաժշտահանի ձգտումը դէպի 6/8-ին ընդունումը: Ամէն պարագայի, թիւ 1 եւ 3-ին առնչութեամբ՝ 6/8-ը շատ աւելի յարմար ու բնական ամանակ մըն է, որ հիւսուածքը կը թօթափէ ծանրաբեռնուած թրիոլներէ: Հետեւելով թիւ 3-ի պարագային, պատշաճ դատեցի թիւ 1-ը եւս ներկայացնել 6/8 ամանակով:

Ստորեւ՝ կ'ընդօրինակեմ *Préludes*-ի ներշընչումի աղբիւր հանդիսացող բանաստեղծութիւնները: Զահրատի անգլերէն բանաստեղծութիւնը ընդօրինակած եմ ըստ Բ. ձեռագիրին, որմէ ետք աւելցուցած եմ անոր հայերէն բնագիրը՝ ըստ *Մեծ քաղաքը* հատորին (Կ. Պոլիս, 1960, էջ 112): Ձեռագիր անգլերէն եւ տպագիր հայերէն բնագիրներուն միջեւ կան որոշ տարբերութիւններ: Խրախունիի բանաստեղծութիւնը ընդօրինակեցի ըստ *Քար կաթիլներ* հատորին (Կ. Պոլիս): Ձեռքի տակ չունենալով Թէրզեանի եւ երկու ֆրանսերէն բանաստեղծութիւններուն առանձին բնագիրները, զանոնք ընդօրինակեցի Ղազարոսեանի ձեռագիրէն, որուն հետեւանքով տողաբաժանումները, ստիպուած, կատարեցի իմ կողմէս:

**ՆԱԽԱԲԱՆ ԹԻՒ** 4
WOMAN PICKING OVER RICE
Zahrad

A rice - a rice - rices - a stone - a rice - a rice - a stone
A white one - a black stone - a rice - a black stone - a white rice - a rice
Rice beside rice - stone beside rice - a sudden word - word beside rice
Then words - a rice - a word - a rice - word beside - word and then a phrase
And word by word a foolish talk - an ancient song - a by gone dream
Then just a life - another life - life beside life - a rice a a life
An easy life - a heavy life - easy but why - heavy but why
But side by side lives - and a life - and then a word - and then a rice
A black one - a white one - a black stone - a green - a white song
A rice - a white rice - a black stone - a rice - a stone - a stone - a rice.

ՈՍՊ ՍՏԿՈՂ ԿԻՆԸ
Զահրատ

Ոսպ մը - ոսպ մը - ոսպեր - ոսպ մը - քար մը - ոսպ մը - ոսպ մը - քար մը
Կանաչ մը - սեւ մը - կանաչ մը - սեւ մը - քար մը - կանաչ ոսպ մը
Ոսպ ոսպի քով - քար ոսպի քով - յանկարծ բառ մը - բառ ոսպի քով
Յետոյ բառեր - ոսպ մը - բառ մը - բառ բառի քով - յետոյ խօսք մը
Ու բառ առ բառ խօլ բարբառ մը - հինցած երգ մը - հին երազ մը
Յետոյ կեանք մը - ուրիշ կեանք մը - կեանք կեանքի քով - ոսպ մը - կեանք մը
Դիւրին կեանք մը - դժուար կեանք մը - ինչու դիւրին - ինչու դժուար
Բայց քով քովի կեանքեր - կեանք մը - յետոյ բառ մը - յետոյ ոսպ մը
Կանաչ մը - սեւ մը - կանաչ մը - սեւ մը - ցաւ մը - կանաչ երգ մը
Կանաչ ոսպ մը - սեւ մը - քար մը - ոսպ մը - քար մը - քար մը - ոսպ մը

**ՆԱԽԱԲԱՆ ԹԻՒ** 5
ԱՄԷՆ ՆՈՐ ՕՐ
Արմենուհի Թէրզեան

Ամէն նոր օր որ կը սկսի
Դուռ մըն է անծանօթին դէմ բաց
Յոյսի ճամբորդը չէ յոգնած
Կը քալէ:

Ամէն նոր օր որ կը սկսի
Փոքրիկ վարդ մ'է նոր բացուած
Ուշադրութեամբ քաղէ զայն
Փուշեր ունի պահած:
Ամէն նոր օր որ կը սկսի
Երազ մըն է յոյսով վառած
Զգո՛յշ քայլերդ թեթեւ ըլլան
Չի՛ մարին:

**ՆԱԽԱԲԱՆ ԹԻՒ 7**
ՀԱՆՔ
Զարեհ Խրախունի

Կը թողում

Կը թողում որ պեղէք զիս
Ամէնէն պարզ բրիչով կամ ինքնագործ գալիկոնով վիթխարի
Կը թողում որ ծակէք փորէք բանաք զիս
Ինչ որ գտնէք հանէք դուրս
Առնէք ծախէք - կորզէք խլէք ձեռքէ ձեռք
Պահէք դիզէք անհատնում
Ու միշտ շահիք - շահագործէք զիս անգութ:

Ես կը թողում
Կը թողում որ նեղէք զիս
Ծակ ծակ ընէք տեղ տեղ այրէք տաղէք զիս
Խոր խուզարկէք աւլէք սրբէք մաղէք զիս
Փոշիս անգամ օգտագործէք - յետոյ իջնէք աւելի վար աւելի՛
Ընդերքիս մէջ հրակէզ
Նոր երկունքիս երախայրիքն յափշտակէք - փախչիք վեր:

Կը հանդուրժեմ անտրտունջ
Վէրքերուս դէմ ցաւերուս դէմ կը տոկամ
Ձեզի կու տամ ձրիօրէն ամէն ինչ որ ունիմ ես
Լոյսի նման եւ ջուրի - լման կեանքի մ՚արժողութեամբ սիրոյ պէս
Ես հանք ունիմ անյատակ - ես գանձ ունիմ անսպառ
Ոչ կը ցամքիմ պարպելով - ոչ կը հատնիմ վատնելով
Այնքան խոր եմ այնքան հարուստ որ երբեք
Ոչ սահմանիս ոչ հաշիւիս կը հասնիք:

Միայն չըլլա՜յ որ անարգէք կամ անտեսէք կուրծքէք զիս
Բաղդատէք զիս ուրիշներու եւ բամբասէք ծաղրէք զիս
Ես այն ատեն հարիւրներով ձեզ մը փակեմ նկուղներուս մէջ անլուր
Կը խեղդեմ ձեզ թունահեղձ - կամ ձեր գլխուն կը փլչիմ
Ու ձեզ ողջ ողջ կը թաղեմ:

Եթէ այդ ալ չբաւէ
Կը զրկեմ ձեզ հանածոյէս - կը կարծրանամ կը չորնամ -
Վնաս կ՚ընէք - սնանկ կ՚ըլլաք - կը լքէք
Ես կը պահեմ կոյս խաւերն իմ գալիքներուն ձեզմէ վերջ
Ու կը սպասեմ դարեր յետոյ զիս գտնողին խանդավառ
Իմ խորքերուս իջնողներուն երկիւղած:

**ՆԱԽԱԲԱՆ ԹԻՒ 10**
PRÉSENCE

Mon cher amour vous êtes là
Sous mes yeux clos et ma main tremble
Bien malgré moi tant il me semble
Que du jour vous êtes l'éclat!

Vous êtes là mon cher Bonheur
A chaque seconde qui passe,
Comme un aveu qui nous enlace
Et nous grise de son ardeur!

Vous êtes là, õ Bien aimé
Et je ne perçois plus les choses,
Les hommes, les astres, les roses
Ni l'étrange soir embaumé.

Vous êtes là bel écran pur
Voilant un monde sans terreur
Sur cet appui je suis sans peur
Epanouie en beau fruit mur!

Et je suis ainsi tout le jour
Le soir cumulant nos prières...
Dis-moi, quelle ardente lumière
Peut confronter ce grand Amour?

**ՆԱԽԱԲԱՆ ԹԻՒ 11**
NOS MAINS

Mizou

Rien ne vaut une main tendue avec amour
Une main retenant des doigts faibles qui tremblent
Ces deux mains qui se cherchent se trouvent et s'assemblent
Sous le plus beau bouquet expressif de l'Amour
J'ai blotti mes doigts tendres au creux de ta main brune
Et ta main frémissante m'a dit une chanson
Une chanson lascive et muette, insistante...
Ma main était la coupe, la tienne l'échanson;
Le vin coulait entre nos phalanges enlacées
La lune paresseuse pointait sa corne d'or...
Autour de mon poignet de douces fleurs tressées
Donnaient à leur parfum le plus subtil essor
Et le tourment divin pressait nos doigts plus fort!
A chaque écho perçu de la nuit
Soupirant la [?] de nos doigts
À nos coeurs se transmettant en si souri
Et poignant bonheur que nos mains
N'étaient plus qu'une prière ardente car nos mains
Écoutaient autant que nos soupirs...

## ԱՅԼ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ

Սոյն հատորէն դուրս կը մնայ *Vingt quatre études* (Քսանչորս վարժութիւն) խորագիրով ժողովածուն, քանզի ան 1967-ին տպագրուած է ֆրանսական հռչակաւոր հրատարակչատան՝ Édition Choudens-ի կողմէ, որուն շնորհիւ արժանացած լայն տարածումի։

Այս *Études*-ի մասին առաջին յիշատակութիւնները ի յայտ կու գան 1950-ականներու վերջաւորութեան։ 1959 Յունիս 18-ին, Փարիզի Institut Hongrois-ին մէջ տուած հեղինակային մենանուագին կը նուագէ *Étude*-ի մը (Վարժութիւն) (1959), առաջին կատարումը (Պելա Պարթոքի յիշատակին)[122]։ Անկարելի է ըսել՝ թէ որ *Étude*-ն է ասիկա, բայց յստակ է՝ որ այստեղ կը սկսի կազմաւորուիլ *Étude*-ներ յօրինելու գաղափարը։ 1964 Ապրիլ 14-ին, Իսթանպուլի Սարա Սինեմային մէջ Շահան Արծրունի կու տայ մենանուագ մը՝ ուր կը նուագէ *սոլ փոքր-բայար Étude*-ը՝ նուիրուած իրեն[123]։

*Étude* թիւ 7-ը 1964-ին կը տպագրուի Ցիցիլիա Բրուտեանի կազմած սփիւռքահայ երաժշտահաններու ժողովածուին մէջ[124]։ 1967-ի Choudens-ի հրատարակութեան համար Ղազարոսեան այս *Étude*-ին մէջ կատարած է կարգ մը սրբագրութիւններ։

Իսկ 1966 Փետրուար 5-ին, Փարիզի École Normale de Musique-ին մէջ, Club des Amis des Arts et des Lettres-ը կը կազմակերպէ նուագահանդէս մը, որուն առաջին մասին մէջ Ղազարոսեան կը նուագէ իր *24 Études*-ը[125]։ Տպաւորութիւնը կ'ըլլայ ցնցող։

*Մարմարա*յին մէջ, Փարիզէն ստացուած թղթակցութիւն մը կը փորձէ բնութագրել դանոնք.

«Գոհարիկ Ղազարոսեան գրաւեց յայտագիրին առաջին մասը, նուագելով իր հեղինակած քսան եւ չորս կտորները, թեքնիք բացատրութեամբ «էթիւտ» որոնք յօրինուած են ձայնաշարի քսան եւ չորս թոներու վրայ, հետեւողութեամբ Շոփէնի յղացած գործերուն։

«Այս վերջինը եթէ իւրաքանչիւր թոնի նուիրուած գործին ունկնդրութիւնը կը պարտադրէ ստեղծելով համապատասխան երաժշտական մթնոլորտ մը, Գոհարիկի գործերուն մէջ նուաղ զգալի է այդ դրութիւնը. կտորներուն մեծամասնութիւնը հիմնուած ըլլալով արդիական դաշնաւորման սկզբունքներու վրայ, որոնց համաձայն *թոնալիթէ*ի մը տեւական զգացողութիւնը անկայուն է։

«Արդի դպրոցի հիմնական սկզբունքներէն մէկն է ասիկա, որուն ջերմ երկրպագու մը ըլլալ կը թուի մեր երգահան դաշնակագրուհին։

«Ինքնատիպ եւ զանազան նկարագրով գործեր են, ուր դաշնամուրային թեքնիք մեքենականութիւնը տիրական բաժին մը ունի երբեմն ալ դանդաղ եւ մեղեդիական առինքնող գիծերով համեմուած։

«Գոհարիկ Ղազարոսեան կը սիրէ իր հեղինակութեանց մէջ իբր նախանիւթ գործածել հայ ժողովրդական եւ ծիսական երաժշտութեննէն նմոյշներ, ձեւափոխելով անոնց կշռութային եւ նաեւ մեղեդիական գիծը, ազատ ըլլալու համար անոնց ընդլայնումի աշխատանքին մէջ։

«Այդ *թէմա*ները աջ եւ ձախ ձեռքերու փոխն ի փոխ նուագածութեամբ հետաքրքրական երեւոյթներ կը ստեղծեն, երբեմն հիմնական նիւթ ունենալով երբեմն ալ խաբուսիկ արձագանգներով համեմուած...։

«Համեմատաբար աշխատանքի արդիւնք այս երեւոյթին առջեւ, հայ եւ օտար հասարակութիւնը երկարատեւ ծափահարութեամբ գնահատեց արուեստագիտուհին որ անխոնջ՝ գրեթէ մէկ ժամ տեւողութիւն ունեցող այս ամբողջական գործը նուագեց մէկ չունչով, ինքնավստահ եւ առանց ընկրկումի»[126]։

Ա. Փափազեան եւս ունի իր կարծիքը.

«[Էթիւտներէն] շատերը նուագածութեան մասնաւոր թեքնիքի մը պատկերը ըլլալէ աւելի՝ ընդհանուր դժուարութիւններու, արագութեան, ռիթմի կամ թուշէի հակադրութիւններ կը պահանջեն։ Այսպէս, այլազանութիւնը աւելի շեշտուած է իւրաքանչիւր կտորի մէջ քան մէկ կտորէն միւսը։

«Կարեւորը անշուշտ երաժշտական մտածումն է, որ իմաստ եւ արտայայտութիւն պիտի տայ ընտրուած ձեւին։ Այս տեսակէտէն հեղինակը հաւատարիմ է *թոնալիթէ*ին։ Հիմնական նոթը միշտ կը կազմէ ձգողութեան կեդրոնը, առանց սակայն ըլլալու անդիմադրելի բռնապետ մը։ Մեկնակէտէն մինչեւ վերադարձը, *մոտիւլասիոնները* արագ եւ անսպասելի անցքերով կը յաջորդեն իրարու։ Երբեմն *փոլիթոնալ* մասեր ալ կ'երեւան։ Գրութիւնը փոխն ի փոխ հորիզոնական է կամ ուղղաձիգ։ Այս վերջինին գեղեցիկ մէկ օրինակն է «Հայր մեր»ը, որուն դաշ-

նաւորումը կրկնապէս կը յուզէ իր նրբութեամբ:

«Ընդհանուր առմամբ երաժշտական մտածումը կը խրտչի հասարակէն, բայց նաեւ բռնազբօսիկ զարտուղութիւններէն: Անոր արդիականութիւնը բանաւոր սահմաններ ունի: Իսկ զգայական խորքը կ'ընդգրկէ լայն գետին մը՝ քնքոյշ, մեղմ նրբերանգներէն մինչեւ ուժեղ արտայայտութիւնները: Երբեմն Շոփէնի կամ Լիսթի յիշատակը կը գունաւորէ որոշ մաս մը: Երբեմն ալ մեր ժողովրդական երգերէն, պարերգներէն, եկեղեցական մեղեդիներէն բեկորներ կու գան խառնուիլ երաժշտական կտաւին՝ ենթարկուելով կարեւոր ընդլայնումներու:

«Այսպէս կը ծնի ճոխութեան, հարստութեան տպաւորութիւն մը, որ սակայն կը վնասէ ոճի կատարեալ միութեան: Այս պարագան նշմարելի է մանաւանդ այն կտորներուն մէջ, ուր կը գործածուին յայտնի հայ երգեր, հոն ուր ընդհակառակն մաս մը ունկնդիրներ թերեւս պիտի զգան սիրելի ծանօթի մը հանդիպելու հաճոյքը...:

«Իրապէս դժուար հարց է հայ շունչի մը արժանաւոր մուտքը արդի երաժշտութենէն ներս: *Էթիւտ*ներու հեղինակը իր պրպտումներով կը յառաջանայ արդէն այդ ուղղութեամբ: Ի՞նչպէս տարազել այս նպատակին իտէալ իրագործումը: Տարրալուծել մեր պարերուն եւ երգերուն ձայնաշարի, ռիթմի, մեղեդիական շարժման, յուզական խորքին էական յատկանիշերը, թափանցել անոնց ենթահողէն ներս, յետոյ զանոնք ստեղծող ոգիին հետ բարձրանալ մինչեւ ձայներու արդի աշխարհը, կերտելու համար նոր իրականութիւններ՝ սերտօրէն շաղախուած ինքնուրոյն թէքնիքի մը եւ ոճի մը հետ:

«Ամէն պարագայի մէջ Ղազարոսեանի այս մեծ աշխատութիւնը կարեւոր նպաստ մը կը բերէ հայ հեղինակներու դաշնակային երաժշտութեան»[127]:

Ֆրանսական *Էնֆորմասիոն* օրաթերթը իր հիացումը կը յայտնէ.

«Գոհարիկ Ղազարոսեան կ'իրականացնէ մեծ իտէալ մը Փարիզի «արուեստասէր»ներուն ներկայացնելով իր 24 էթիւտներուն զգայացունց հաւաքածոն որ մեր հիացումին արժանի է:

«Քիչ են այս տողերը այս ընդարձակ նիւթին շուրջ: Ընդհանուր կերպով՝ Շոփէնի հանճարեղ շունչը կ'երեւի հսկայական գործին մէջ, ի՛նչ որ արդար գնահատանք մըն է բազմաթիւ տեսակէտով:

«Արդարեւ, այս «էթիւտ»ները ամէն բանէ առաջ բանաստեղծական շունչ ունին եւ «վիրթիւոզիթէ»ն կը ծառայէ միշտ՝ մտածումի մը, խոր ներշնչումի մը կամ ներքին պոռթկումի մը:

«Հերոսական եւ կրակոտ թեմաներու մօտ, կա՛ն ուրիշներ մելամաղձոտ եւ յուսահատ, որոնք կը յուզեն խորապէս»[128]:

Յաջողութեան արձագանգները կը հասնին հայրենիք[129]:

*24 Études*-ը դասաւորուած է ձայնակայքային յաջորդականութեամբ՝ ճիշդ Պախի 24 Նախաբան եւ Ֆիւկերուն նման: Ինչպէս տեսանք, Ղազարոսեան այս սկզբունքը սկսած էր կիրառել *Album bien tempéré* (Բարեփոխեալ ալպոմ) նուագաշարին համար: Բայց վերջինիս իրագործումը սերտօրէն կապուած էր Bien tempéré (Բարեփոխեալ) մենանուագներու շարքին հետ, իսկ այս մենանուագներու նուագեցումին զուգահեռ կը տկարանայ նաեւ նուագաշարը աւարտելու ներքին մղումը: Բայց միեւնոյն սկզբունքները կը յաջողի կատարել ու աւարտել *24 Études*-ին ընդմէջէն: Անոնք կարծէք թէ *Album bien tempéré*-ի չիրականացած երազին մարմնաւորումն ըլլան: Այս գաղափարը կը հաստատէ նաեւ Գահիրէի մէջ տուած մենանուագը՝ 1967 Յունիս 4-ին, ուր յայտագիրը՝ Bien tempéré-ի հետեւողութեամբ, ընտրուած էր *տօ մեծալար*: Բայց փոխանակ բովանդակելու *Album bien tempéré*-ի ընդունուած "Choral"-ը (Հայր մեր), կը պարփակէր նորաստեղծ *Études*-ին թիւ 1 *տօ մեծալարը*[130]: *Études*-ը եկած էր փոխարինելու *Album bien tempéré*-ին: Յաւօք, Ղազարոսեանի վաղահաս մահը 1967 Հոկտեմբեր 29-ին վերջակէտ կը դնէր նաեւ իր մշտանորոգ գաղափարներուն:

*24 Études*-ին ձեռագիրները չեն պահպանուած: Հաւանաբար, անոնց տպագրութենէն ետք երաժշտահանը աւելորդ նկատած է պահպանել զանոնք:

Սօնա Պետրոսեանի մօտ կը գտնուի հետեւեալ ձեռագիրը.

Խորագիր՝ 17րդ Étude, Ի՞նչ կ'ոնիմ հէքիմըն: Հեղինակ՝ նշուած չէ: Երաժշտական կազմ՝ մենանուագ դաշնակ: Թուական՝ նշուած չէ: Թերթ՝ 1: Գրիչ՝ Գ. Ղազարոսեան: Գրչատեսակ՝ սեւ մելան: Մեծութիւն՝ 26.5x33.8 սմ.:

Տպագրուած թիւ 14-ին նման, այս ձեռագիրը

